ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ՍՈՎԵՏԻՆ ԱՌԸՆԹԵՐ
ՄԱՇՏՈՑԻ ԱՆՎԱՆ ՀԻՆ ՁԵՌԱԳՐԵՐԻ ԻՆՍՏԻՏՈՒՏ—«ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ»
ԲԱՆԲԵՐ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆԻ
ԵՐԵՎԱՆ № 10 1971

ՓԱՅԼԱԿ ԱՆԹԱՐՅԱՆ

# «ՏՈՆԱՊԱՏՃԱՌ» ԺՈՂՈՎԱԾՈՒՆ

*Հայկական ձեռագրական հարուստ ժառանգության մեջ պահպանվել են եկեղեցա-ծիսական կիրառության համար նախատեսված մի քանի ուրույն ժողովածուներ։ Դրանց պատմա-հասարակական դերը միջնադարում եղել է նշանակալից ժողովրդի հոգևոր-բարոյական կյանքը կազմակերպելու և իմացական մակարդակը բարձրացնելու խնդրում։ Մեր պատմության, քաղաքական, սոցիալ-տնտեսական կյանքին, փիլիսոփայական ու գեղագիտական մտքին, լեզվին, կենցաղին, հոգևոր կյանքի կառուցվածքին առնչվող հարցերի լուսաբանության համար դրանք փաստական առատ նյութ ու լայն հնարավորություններ են ընձեռում։ Դրանցում ընդգրկված են ոչ միայն կրոնական ու ծիսական երկեր, այլև պատմական բնույթի աշխատությունների փոքր կամ ընդարձակ հատվածներ, ճառեր, ներբողներ, վարքագրական ու վկայաբանական կարևոր երկասիրություններ, խրատներ, հրաշապատում գեղարվեստական զրույցներ, քարոզներ, ներբողներ, փոքրածավալ լուծմունք-մեկնություններ, ընդարձակ մեկնություններից քաղված հատվածներ, հաղվադեպ՝ գանձեր, տաղեր և այլն։ Հիշյալ նյութերի ժանրային պատկանելության, բազմազանության ու շոշափած թեմաների հարստության այս հանգամանքն էլ հենց ստանում է պատմա-ճանաչողական որոշակի արժեք հայկական միջնադարի մասին հստակ պատկերացում կազմելու համար։ Ուստի և հայ բանասիրության համար խոր հետաքրքրություն են ներկայացնում դրանց գիտական, մատենագրական, բնագրագիտական առանձնահատկություններն ու արժեքը։ Դրանց շահեկանությունը, հատկապես բնագրագիտական առումով, ակնհայտ է նաև հունա-ասորական գրականության վաղ շրջանի պատմության համար, քանի որ ընդգրկված մի շարք երկեր հույն և ասորի հեղինակների գրչին են պատկանում։*

*Այդ ժողովածուները շատ են, ունեն կիրառության տարբեր նպատակ ու նշանակ։ Սակայն այս առիթով մեզ հետաքրքրում են դրանցից միայն հինգը՝ Ճաշոցը, Հայսմավուրքը, Ճառընտիրը, Տոնացույցը և Տոնապատճառը, որոնք տարբեր ժամանակներում համապատասխանաբար Տոնամակ, Տոնանամակ, Տոնական, Ճառընտիր, Տոնացույց, Տոնացուցակ, Հայսմավուրք, Ճաշոց, Տոնապատճառ, Պատճառ տոնից անուններն են ստացել։ Թեև բոլորն էլ հասել են մեզ և մի քանիսը (Տոնացույց, Հայսմավուրք, Ճաշոց) այժմ էլ օգտագործվում են եկեղեցական ծիսակատարությունների ժամանակ, սակայն, դժբախտաբար, առ այսօր դրանց (բացառությամբ Հայսմավուրքի)[1] նվիրված հատուկ մասնա-*

---

[1] *Բացառաբար սույն ժողովածուի մատենագիտական քննությամբ զբաղվել են Պ. Պիտերս* (Pour L'Histoire du synaxaire armenien: Anallecta Bollandiana, 30, 1911, *էջ 5—26*), **Ա. Էուրինգերը** (Die Passio des hl. Januarius von Benevent und seiner Genossen. Aus dem Armenischen übersctjt, Theologie und Glaube 5, 1913, *369—374*), **Ն. Ադոնցը**

գիտական ուսումնասիրություններ չկան, ուստի և այդ հարցում գոյություն ունի ոչ հստակ պատկերացում, իսկ երբեմն էլ շփոթություն։ Այլևայլ առիթներով անցյալում դրանց մասին առանձին դիտողություններ են արել հայագետներ Մ. Չամչյանը, Գ. Զարբհանալյանը, Ղ. Ալիշանը, Մ. Օրմանյանը, Կ. Տեր-Մկրտչյանը, Գ. Հովսեփյանը, Հ. Աճառյանը և ուրիշներ։ Փոքր ինչ հանգամանալից է եղել Մ. Ավգերյանի[2] և Ն. Ակինյանի[3] խոսքը։ Ասենք նաև, որ վերոհիշյալ բանասերների դիտողությունների մեջ տեղ են գտել որոշ անճշտություններ հատկապես նշված ժողովածուների անունների պատկանելության ճշտելու խնդրում։ Մ. Ավգերյանն, օրինակ, իրավացիորեն Տոնամակը նույնացնում է Ճաշոցի հետ[4], սակայն, Ղ. Ալիշանը՝ Տոնականի հետ[5], իսկ Մ. Օրմանյանը գրեթե բոլորը միացնում է մեկ ընդհանուր ժողովածուի՝ Հայսմավուրքի անվան տակ[6]։ Գ. Զարբհանալյանը ևս այս կապակցությամբ իր տեսակետը ստուգապես չի ճշտել։ Ատոմ Անձևացու վերաբերյալ խոսելիս նա իմիջիայլոց գրում է, որ վերջինս հորինել է սրբերի վարքերի մի ժողովածու, որը կոչվել է «Ատոմագիր» և «Հոռոմագիր»։ Ըստ նրա ենթադրության, հիշյալ ժողովածուն կոչվել է նաև Տոնացույց և Տոնացուցակ[7]։ Ուրեմն, նրա համոզմամբ այս անունները վերաբերում են միևնույն ժողովածուին։ Բայց, մեր կարծիքով, դա այդպես չէ, քանի որ Տոնացույցը վարքաբանական ժողովածու երբեք չի եղել։

Ավելի նեղ մասնագետները, անշուշտ, դրանց մասին ճիշտ պատկերացում ունեն։ Օրինակ, նշված անորոշությունը ձեռագրացուցակներում գրեթե բացակայում է։

Այդուհանդերձ, կարծում ենք խնդրո առարկա ժողովածուներին առնչվող շատ հարցեր ըստ էության դեռ չեն քննարկված ու լուսաբանված։ Մենք, իհարկե, չենք հավակնում այստեղ ներկայացնել հիշյալ ժողովածուների լիակատար ուսումնասիրությունը, որը խիստ անհրաժեշտ է և որին, ի դեպ, արդեն ձեռնարկել ենք, բայց հարկ ենք համարում մասամբ անդրադառնալ դրանց անունների ու բովանդակության փոխհարաբերություններին և պատկանելությանը՝ մեր հիմնական խոսքը վերապահելով այլ առիթի։

Առկա սկզբնաղբյուրների և նշված ժողովածուների բազմաթիվ ձեռագրերի հետազոտությունը մեզ բերել է այն եզրակացության, որ վերոհիշյալ անուններից երբեմն նույնիսկ չորսը վերաբերում են միևնույն ժողովածուին, բայց ժողովածուներից և ոչ մեկը չի նույնանում մյուսին, թեկուզ և փոխադարձ ընդհանրությունները սակավ չեն։ Այսպես, օրինակ, Տոնականը երբեք չպիտի շփոթել Տոնամակի-Տոնանամակի և ոչ Տոնացույցի-Տոնացուցակի հետ, որովհետև դրանք տարբեր նպատակներով ու ծրագրերով կազմված, տարբեր կառուցվածք ու բովանդակություն ունեցող ժողովածուներ են։

(ote sur les synaxaires armeniens: Revue d'Orient Chretien. 24, 1924, էջ 211—218), Ս. Տեր-Ներսեսյանը (Le synaxaire armenien de Gregoire VII d'Anazarbe: Melangeo Paul Peeters. Analecta Bollandiana, 68, 1950, էջ 261—285), սակայն այս հարցում ևս հիմնականը դեռևս մնում է իրագործելի։

2 Ա. Ավգերյան, Լրումն լիակատար վարուց, ԺԱ, Վենետիկ, 1814, Ներածութիւն, էջ ԿԸ—ՂԶ։

3 Ն. Ակինյան, Հովսեփ Կոստանդնուպոլսեցի, «Հանդէս ամսօրյա», 1957, էջ 1—12։

4 Մ. Ավգերյան, նշվ. աշխ., ԺԱ, Ներածութիւն, էջ ՂԱ։

5 Ղ. Ալիշան, Շնորհալի և պարագայ իւր, Վենետիկ, 1873, էջ 30—31, Հայապատում, Վենետիկ, 1901, էջ 107—108։

6 Մ. Օրմանյան, Ազգապատում, Ա, Կ. Պոլիս, 1812, էջ 982։

7 Գ. Զարբհանալյան, Պատմութիւն հայ դպրութեան, Վենետիկ, 1897, էջ 569։

Ճաշոցը և Հայսմավուրքը եկեղեցա-ծիսական ամենօրյա կիրառություն ունեն։ Համաձայն հայ եկեղեցու ծիսական կարգուկանոնի, դրանցից հավուր պատշաճի կատարվում են համապատասխան հատվածների ընթերցումներ, որոնք նախատեսված են ամբողջ տարվա ամեն մի օրվա համար առանձին։ Այս սկզբունքով էլ դրանցում նյութերի բաժանումներն ունեն օրացուցային կարգ։ Այս խմբի ժողովածուներում (հատկապես Ճաշոցում) գերիշխում են ծիսական-կրոնական նյութերը։

Տոնացույցը (նույնն է նաև Տոնացուցակը) նույնպես այս խմբին է պատկանում։ Այն ևս եկեղեցա-ծիսական ամենօրյա կիրառություն ունի, միայն թե դրանում նյութերի մեկտեղում չկա այն կարգով, ինչով որ կազմվել են սույն խմբի մյուս ժողովածուները։ Նոր հայկազյան բառարանի ճշգրիտ բնորոշմամբ Տոնացույցը «Ցուցակ տօնից է և տօնական պաշտամանց, իբր օրացոյց եկեղեցական...»[8], այսինքն՝ ուղեցույց-մատյան, որտեղ համապատասխան կարգ ու ցուցմունքներ կան եկեղեցական ամենօրյա ժամակարգության, տոների, ծիսակատարությունների և համապատասխան արարողությունների ժամանակ երգվելիք շարականների ու կարդացվելիք աստվածաշնչային հատվածների ընթերցումների վերաբերյալ։ Այն վերջնական տեսքի է բերել XVIII դ. Սիմեոն կաթողիկոս Երևանցին։

Սակայն, սույն խմբի հետ ունեցած իրենց որոշ ընդհանրություններով հանդերձ, Ճառընտիրն ու Տոնապատճառն այլ խումբ են ներկայացնում, թեև նույնպես առնչվել են եկեղեցում ծիսակատարությունների ժամանակ կիրառվելու համար, բայց չունեն ամենօրյա օգտագործման վերոհիշյալ կարգը, բացի դրանից, շատ ավելի ուրույն և ազատ են նյութերի ու թեմատիկայի ընդգրկմամբ։ Այս հանգամանքը դրանց շահեկանության և արժեքի վրա թողել է ավելի բարերար ազդեցություն։

Ճառընտրի մեջ տեղ են գտել առավելապես հանդիսավոր, հռետորական խոսքի ստեղծագործություններ՝ ճառ, ներբող, տեսիլք, պատմություն և այլն, որոնք կիրակի օրերին և տոնից-տոն արտասանվել կամ ընթերցվել են եկեղեցում։ Սույն ժողովածուի մեջ համեմատաբար քիչ են վարքերն ու վկայաբանությունները, որոնք ավելի շատ տեղ են գտել Հարանց վարք և Հայսմավուրք կոչվող ժողովածուներում, որոնցում դրանք գերակշիռ և որակավորող նշանակություն ու արժեք ունեն։

Ճառընտիրը մի տեսակ «ընտիր երկերի» անսահմանափակորեն աճելու հեռանկար ունեցող այն ժողովածուն է, որը, կարծես թե, նաև ազատ ընթերցանության համար է նախատեսվել։ Ճառընտրի հետ է կապվում և նույնիսկ նույնանում է Տոնականը։ Մատենադարանի 1202 թվականին ընդօրինակված № 7729 ձեռագիրը, որը հայտնի է «Մշո Ճառընտիր» անունով, իր իսկ հիշատակարաններում կոչված է «Տոնական»[9]։ Այս ժողովածուն Գ. Հովսեփյանը նույնպես կոչել է Տոնական, բայց Բ. Սարգիսյանն անվանել է Ճառընտիր[10]։ Երբ այն համեմատում ենք վերոհիշյալ ժողովածուներից յուրաքանչյուրի հետ, ամե-

8 «Նոր բառգիրք Հայկազեան լեզուի», Բ, Վենետիկ, 1837, էջ 902։

9 Մատենադարան, ձեռ. № 7729, էջ 602ա։

10 Գ. Հովսեփյան, Յիշատակարանք ձեռագրաց, Ա, Անթիլիաս, 1951, էջ 699, 723։
Բ. Սարգիսյան, Մայր ցուցակ հայերէն ձեռագրաց, Բ, Վենետիկ, 1924, էջ 435։

պարզությամբ տեսնում ենք, որ նման է ավելի ուշ «Ճառընտիր» անունն ընդունած ժողովածուին:

Նոր հայկազյան բառարանի հեղինակների կողմից օգտագործված մի Ոսկեփորիկի վկայությամբ՝ «Սողոմոն Մաքենոցի հայրն արար զՏօնականն»[11]: Մեզ հասած «Գրոց ցանկերում» ևս պահպանված է այս վկայությունը[12]: Մշո Ճառընտրի ձեռագրի հիշատակարանն էլ հիշեցնում է, որ այն ըստ մեծի մասին առնչվում է Սողոմոն Վանահոր կազմած Տոնականին[13]:

Այս կարծիքին է եղել Բ. Սարգիսյանը դեռ շատ վաղուց[14]: Այսպիսով, տարակույս չի մնում, որ 1202 թվականին գրված Մշո Ճառընտիրը և՛ Տոնական է, և՛ Ճառընտիր, այսինքն՝ երկուսն էլ միաժամանակ:

Տոնական է նաև Վիեննայի Մխիթարյանների № 224 ձեռագիրը, ինչպես վկայված է դարձյալ իր իսկ հիշատակարանում. «Փառք... որ ետ կարողութիւն հասանել ի յետին գիծ ոսկեփոր Տօնականիս...»: Ճառընտիրների հետ կատարված համեմատությունը ցույց է տալիս, որ այն իրապես ճառընտիր է և ոչ այլ ինչ: Հ. Տաշյանը ինքն էլ այն դիտել է իբրև այդպիսին ու նշել. «Մատեանս է Ճառընտիր-Տօնական»[15]:

Տոնական է Մաշտոցյան մատենադարանի № 994 ձեռագիրը դարձյալ իր իսկ հիշատակարանի վկայությամբ. «...սուրբ գիրքս զայս, որ անուանի Տօնական»[16]: Բովանդակությամբ ևս այն համընկնում է ճառընտրին: Այսպիսի Տոնական-ճառընտիրներ շատ-շատ են հասել մեզ, ինչպես, ասենք, մեր № № 992, 993, 995, 996, 1524 և այլ ձեռագրեր: Լ. Խաչիկյանը ևս Տոնականը դիտել է իբրև Ճառընտիր[17]: Այսքանն էլ, կարծում ենք, բավական է ցույց տալու համար, որ Տոնականը միևնույն Ճառընտիր ժողովածուն է:

Մեր կարծիքով, Հոռոմագիրը, կամ ըստ ոմանց՝ Հոռոմագիրքը, ինչպես նաև Ատոմագիրը, հիմնականում մեր այսօրվա Հայսմավուրքի նախատիպերն են: Ասում ենք հիմնականում, որովհետև առաջինները կազմվել են X դ. սկզբներին, երբ Հայսմավուրքը, իբրև այդպիսին, ըստ երևույթին, գոյություն չի ունեցել: Բայց, քանի որ, ինչպես աղբյուրներն են վկայում, դրանք առավելապես բաղկացած են եղել վարքաբանական և վկայաբանական երկերից, ապա պետք է ենթադրել, որ դրանք ավելի առնչվում են Հայսմավուրքին և ոչ, ասենք, Ճաշոցին, Տոնացույցին, Ճառընտրին կամ Տոնապատճառին, թեև վերջին երկուսի մեջ էլ կան վարքաբանական որոշ նյութեր: Ինչպես արդեն նշել ենք, հիշյալ ժողովածուներից Հայսմավուրքը, Տոնացույցը կամ Տոնացուցակն ու Ճաշոցն են, որ ունեն օրացուցային կանոնավոր բաժանում, իսկ մյուսները՝ ոչ: Ատոմագիրը կամ Հոռոմագիրը, ըստ առկա վկայությունների, նույնպես ունեցել է այդպիսի բաժանում: Հոռոմագիր անունն էլ գալիս է այդ բաժանումը կարգավորելու սկզբունքից, որը իրագործվել է ըստ հռոմեական ամիսների և օրերի[18]: Հետևաբար, այս էլ խոսում է այն մասին, որ իրոք, Ատոմագիրը կամ

11 Նոր բառգիրք հայկազեան լեզուի, Բ, էջ 901:

12 Հ. Անասյան. Հայկական մատենագիտություն, Ա, Երևան, 1959, էջ LX:

13 Գ. Հովսեփյան. նշվ. աշխ., էջ 710:

14 Բ. Սարգիսյան. նշվ. աշխ., էջ 435:

15 Հ. Տաշյան. Ցուցակ հայերէն ձեռագրաց..., Վիեննա, 1895, էջ 572:

16 Մատենադարան, ձեռ. № 994, էջ 484ա:

17 ԺԵ դարի հայերեն ձեռագրերի հիշատակարաններ, կազմեց Լ. Ս. Խաչիկյան. Բ., Երևան, 1958, էջ 177, 403:

18 Ղ. Ալիշան. նշվ. աշխ., էջ 30, Գ. Զարբհանալյան. նշվ. աշխ., էջ 569:

Հառամագիրը, եթե ոչ ամբողջությամբ, ապա հիմնականում կապվում է Հայսմավուրքի հետ։

Տոնամակը (նույնն է նաև՝ Տոնանամակը) իրապես ոչ այլ ինչ է, եթե ոչ Ճաշոցը, ինչպես արդեն գրել են բանասերներից ոմանք[19]։ Նոր հայկազյան բառարանում այդպես էլ բացատրված է. «Տօնամակ»-ը տօնից ամին կարգ և ցուցակ՝ ընթերցուածովք, այն են Ճաշոյք ամի-ամի տօնից տարեկանաց, որ յետինս Ճաշոց գիրք ասի»[20] և կամ «...որպէս և գիրքն ընթերցուածոց պատարագի, որ առ նախնեօք Տօնամակ, առ մեզ Ճաշոց ասի»[21]։

Ղ. Ալիշանը մատնացույց է արել, որ Գրիգոր Վկայասերը իր հիշատակարանը դրել է Ճաշոց գրքի մեջ, որը վերջինիս կողմից անվանվել է Տոնամակ[22]։ Նա միաժամանակ վկայում է, որ Կիրակոս վարդապետը ևս Ճաշոցը կոչել է Տոնամակ[23]։ Նշանակում է, դեռ այն ժամանակ նույնացվել են Տօնամակը, Տոնանամակն ու Ճաշոցը (վերջինս երբեմն կոչվել է նաև Տարեգիրք)[24]։

Ըստ երևույթին, Տոնամակ կոչվել է Ճաշոցը նախապես այն պատճառով, որ այնտեղ կենտրոնացված են տարվա բոլոր տոների համար նախատեսված համապատասխան ընթերցանությունները, որոնք հիմնականում քաղված են Հին և Նոր կտակարաններից։ Ճաշոցը այն երկրորդ ժողովածուն է, որի մեջ նյութերի բաժանումը կատարված է օրացուցային կարգով և հաջորդականությամբ, ինչպես, ասենք, Հայսմավուրքում։ Այն ունի մի այլ առանձնահատկություն ևս, որով զատորոշվում է այդ կարգի մյուս ժողովածուներից. նյութերի սկզբում բացատրական խոսք կա այս կամ այն միավորի ընթերցանությանը նախորդող ժամանակահատվածի արարողությունների և ընթերցումների մասին։ Ընդհանրապես նախատեսվում է համապատասխան մի տուն սաղմոս ասել և ապա միայն սկսել հիշյալ միավորի ընթերցումը։ Ճաշոցը բացառապես եկեղեցա-ծիսական կիրառություն ունի։ Այն քննարկվող ժողովածուներից միակն է, որն օգտագործվում է նաև պատարագի ընթացքում։ Մյուս ժողովածուներին անցվող նյութերը խիստ հազվադեպ են Ճաշոցում։

Այսպիսով, խնդրո առարկա ժողովածուները, իրենց պատմական զարգացման ու երկարատև գոյության ընթացքում ունենալով բնագրական, ծավալային այլ կազմություն և, երբեմն, տարբեր խմբագրություններ, կրել են տարբեր անուններ, և քանի որ այդ անուններից մի քանիսը չեն պահպանվել համապատասխան ժողովածուների խորագրերում, այլ միայն զանազան վկայությունների մեջ, ուստի և շփոթվելու առիթ են տվել։

Վերոգրյալ մեր համառոտ դիտողությունները, որոշ գաղափար տալով նշված ժողովածուների բովանդակության ընդհանուր բնութագրումների մասին, միաժամանակ պարզ ցույց են տալիս, որ նույնն է Տոնացույցն ու Տոնացուցակը, Տոնականն ու Ճառընտիրը, Տոնամակը, Տոնանամակը, Տարեգիրքը և Ճաշոցը, Հառամագիրը (նաև՝ Հառոմագիր), Աստմագիրն ու Հայսմավուրքը, և, ինչպես քիչ հետո կտեսնենք, Տոնապատճառն ու Պատճառ-տոնիցը։

---

19 Մ. Ավգերյան, նշվ. աշխ., ԺԱ, ներածություն, էջ ԴԱ։

20 «Նոր բառգիրք հայկազեան լեզուի», Բ, էջ 171։

21 Անդ, էջ 901։

22 Ղ. Ալիշան, նշվ. աշխ., էջ 32։

23 Անդ, էջ 32։

24 «ԺԵ դարի հայերեն ձեռագրերի հիշատակարաններ», Բ, էջ 231. Գ. Երևան, 1967, էջ 19, 33, 70, 387։

Դրանք ժամանակի ընթացքում փոփոխվելով, խմբագրվելով վերածել են մեկը մյուսին և երբեմն նույնիսկ նույնացել են[25]։

Այժմ Տոնապատճառի, նրա կազմության և կազմողների մասին։ Տոնապատճառը ուրույն միավոր է, տարբերվում է Ճաշոցից, Հայսմավուրքից, Ճառընտրից, Տոնացույցից ինչպես իր նպատակադրությամբ, այնպես էլ թեմատիկ բովանդակությամբ ու կառուցվածքով։ Նրա մեջ տեղ են գտել առավելապես կրոնական տոների իմաստին, խորհրդին վերաբերող «պատճառ»-ներ, այսինքն՝ բացատրություններ՝ կրոնագիտական առատ մանրամասնություններով։ Երբեք հիշյալ տոների նյութն ու բովանդակությունը չի պատմվում այնպես, ինչպես հայսմավուրքների մեջ։ Հիշյալ «պատճառ»-ները երբեմն վերաբերում են նաև կրոնական մի շարք երկերի, դրանց ստեղծման հանգամանքների և բովանդակության բացահայտմանը, ճիշտ այնպես, ինչպես մեր մատենագրության մեջ տեղ գտած մյուս բազմաթիվ «պատճառ»-ները։ «Պատճառ»-ի կիրառական սկզբունքը և նպատակը այստեղ նոր եղանակ ու միտում չունեն։ Հիշյալ ժողովածուի Տոնապատճառ կամ Պատճառ—տոնից անվանումը այս նկատառով է տրված և խիստ համապատասխան է նրա բովանդակությանը։ Տոնապատճառը ընդգրկում է նաև այլ նյութեր, ինչպես Ս. Գրոց և մի քանի ճառերի (հիմնականում մեկնողական բնույթի) լուծմունքներ, «տեսություններ», աստվածաբանական և դավանաբանական որոշ երկեր, քիչ թվով՝ ճառեր, մի տեսակ տեղեկատու-ցուցագրեր մարգարեների, առաքյալների, մարտիրոսների վերաբերյալ, որոնք, սակայն, չունեն վարքագրական ձև ու բովանդակություն, ավելի շուտ՝ դարձյալ բացատրական ու գնահատական բնույթի են։

Տոնապատճառում զետեղված երկերի հեղինակներից են հիմնականում՝ Հակոբ Տյառնեղբայրը, Կյուրեղ Երուսաղեմացին, Եփրեմ Ասորին, Հովհան Ոսկեբերանը, Պրոկղը, Հիպպոլիտը, Թեոփիլոսը, Եղիշեն, Մովսես Քերթողահայրը, Զաքարիա կաթողիկոսը, Հովհան Օձնեցին, Ստեփանոս Սյունեցին, Սամվել Կամրջաձորեցին, Ներսես Շնորհալին, Հովհաննես Սարկավագը, Հովհաննես Տարոնացին, Անանիա Նարեկացին, Դավիթ Քոբայրեցին, Գրիգոր, Սարգիս, Պողոս, Քերոբ վարդապետները, Հովհաննես վանականը, Վարդան Արևելցին և անանունը։

Մեզ հասած Տոնապատճառները զգալի տարբերություններ ունեն մեկը մյուսի նկատմամբ։ Լավագույն դեպքում Տոնապատճառները կարելի է խմբավորել, նկատի ունենալով դրանց բնագրագիտական սերտ առնչություններն ու ընդհանրությունները։ Այս առումով ստորև տալիս ենք Մաշտոցյան մատենադարանի № № 2021, 2039, 4139 Տոնապատճառներում, որոնք ընդհանուր առմամբ ներկայացնում են նշված խմբերը, ընդգրկված նյութերի ցանկերը, հոդվածի ընձեռած հնարավորությունների սահմաններում Տոնապատճառի բո-

---

25 Ի դեպ, նույնն է վիճակը նաև հույների համապատասխան եկեղեցա-ծիսական ժողովածուներում, որոնք հիմնականում մեր վերոհիշյալ ժողովածուների նախատիպերն են, մասամբ նաև մի քանիսի հիմքերը։ Հատկապես նյութերի ընդգրկմամբ զգալի ընդհանրություններ ունեն Մինեան, Մենոլոգիոն, Էորթոլոգիոն և Սինաքսարիս ժողովածուները։ Հետագայում դրանցից մի քանիսը, նույնպես ենթարկվելով տարբեր խմբագրությունների, փոփոխվել, միացվել և երբեմն նույնացվել են։ Այսօր ձեռագրերում և տպագիր հրատարակություններում վերջիններս այդպես էլ հանդես են գալիս և՛ առանձին, և՛ միացված։ Տե՛ս Π. Ἀρανδάκη, Μεγάλη Ἑλληνικὴ Ἐγκυκλοπαιδεία, τόμ. ΙΖ΄, σελ. 139, τόμ. ΙΑ΄, σελ. 292, τόμ. ΚΒ΄, σελ. 550. A. History of Byzantine Music and Hymnography, by Egon Wellesz, Oxford, 1962, էջ 135—136, 195.

*վանդակության ու կառուցվածքի մասին ընթերցողին ավելի հստակ պատկերացում և ծանոթություն տալու համար:*

## № 2021
### ՏՕՆԱՊԱՏՃԱՌ

[Առաջին Դաւթի մարգարէին և Յակոբայ].—[*պահպանվել է միայն վերջին մի քանի տողը*] 4ա:

Պատճառ տօնի նախավկա[յ] Ստեփաննոսի–*Աստուածազարդ շուք տօնիս լուսակաղմն...12ա:*

Ի տօնի Պետրոսի և Պաւղոսի—*Յաստուածարար սրանչելեացն բազումք են...19ա:*

Ի տօնի Յովհաննու և Յակոբայ՝ Որդւոցն Որոտման—*Աստուածահրաման պատուէր ունէր... 24ա:*

Պատճառ ծննդեան և յայտնութեան Երազայուցին—*Ըստ աստուածազարդ նոր արարչութեանս... 29բ:*

Պատճառ «Քրիստոս ծնեալ» ճառին–*Աստուածայայտնութեանս խորհուրդ... 38ա:*

Պատճառ սուրբ աւետարանին Մարկոսի՝ ասացեալ Ներսիսի կաթողիկոսի—*Բնութիւնք արարածոց իմանալեաց 49բ:*

Աւետարան ըստ Մարկոսի. «Եւ ի ծնանելն Յիսուսի ի Բեթղահեմ Հրէաստանի»—*Նախ զժամանակն ծննդեանն... 57ա:*

Վասն Տեառնէմտին Վանական վարդապետի ասացեալ—*Յորժամ աստուած զՄովսէս ի լեառն եհան... 62ա:*

Պատճառ առաջաւորին պահոց—*Յոլովք են բանք վասն այսր պահոց... 68բ:*

Ի փետրուարի ամսոյ, որ օր ԺԴ խորհուրդ տեառնընդառաջին, ժողովին ի մատրան—*Ի գալ մեծի թագաւորի... 70ա:*

Վասն բարեկենդանին յետին կիրակէն—*Խորհուրդ եկեղեցւոյ նման է զանձի... 75բ:*

Երկրորդ կիրակէին... «Մի՛ համարիք եթէ եկի լուծանել»—*Յաւուրն բարեկենդանին... 82բ:*

Նորին՝ երկրորդ կիրակէին պատճառ—*Ամենայն բառանորդացն պատճառ... 86բ:*

Չորրորդ կիրակէին պատճառ—*Անընդհատ գոլով ճանապարհացն արդարութեան... 94բ:*

Պատճառ հինգերորդ կիրակէին—*Ահաւոր եւ մեծ է խորհրդոյն զաւրութիւն... 101ա:*

Տեսութիւն առաւօ[տու] աւետարանին—*Ի Մարկոսի[ի] աւետարանն ասացեալ... 103ա:*

Տեսութիւն առաքելոյն—*Այսուհետև, եղբարք իմ, ուրախ լերուք ի տէր... 103բ:*

Տեսութիւն ճաշոյ աւետարանին—*Իբրև հարցաւ ի փարիսեցւոցն... 106բ:*

Պատճառ վեց կիրակէին—*Այն որ նախ բան գոլ... 109բ:*

Պատճառ գալստեան տեառն յԵրուսաղէմ, ի բազում օրինակաց հաւաքեալ ի Քերոբ վարդապետէ—*Աստուածասրանչ և զանեղերաժող... 117ա:*

Մեծի հինգշաբթին պատճառ ի բանն առաքելոյն—*Այսր աւուր սահմանեալ կանոնս... 133բ:*

Յաւուր մեծի ուրբաթուն չարչարանաց տեառն աստուծոյ մերոյ—*Ողբա՜մ և զի՞ մեծ են զարդք քո տէր... 141ա:*

Յաղագս երագայուցին խորհրդոյ սաղմոսաց և բովանդակ պանից—*Զի որպէս զգայի արարածքս յաւելուածով հասին... 156բ:*

Սակս պատճառ յարութեան տեառն՝ ի Մարգսէ առեալ—*Մարդ, որ յուսով է հաստատեալ, նա է մարդ... 160բ:*

Պատճառ բանիցն Գրիգորի Աստուածաբանի, որ ասէ. «ի պանու խնամ կացից»—*Յետ համբառնալոյ տեառն մերոյ...163ա:*

Երանելոյն Յոհաննու Ոսկեբերանի Մեկնութիւն Գործոցն—*Շնորհ խնամոցն աստուծոյ...171ա:*

Պատճառ նոր կիւրակէին և աւետարանացն կարդացման—*Ոմն յիմաստնոցն ասացեալ է... 178ա:*

Պատճառ Բ զատկութեանն և ամպաշու ճանապարհին—*Եղիցին զօտիք ձեր պնդեալ... 180ա:*

Վասն համբարձմանն—*Ամենայն տօնք տեառն... 183ա:*

Վասն իջման հոգւոյն սրբոյ ի վերնատանն յառաքեալսն—*Բարի է աստուած ի բարոյ ամենայնի... 194բ:*

Ի խորհուրդ տապանակին—*Եւ արար Բեսելիէլ զտապանակն յանփուտ փայտ... 199բ:*

Վասն վարդավառին—*Երևի արեգակն ի ծագելն իւրում... 205բ:*

Վասն վարդավառին—*Ուրախ լեր երիտասարդ ի մանկութեան քում... 206ա:*

## № 2039

### ՏՕՆԱՊԱՏՃԱՌ

[Առաջին Դաւթի մարգարէին և Յակովբայ...][26]—*Եւ զղջացաւ տէր, զի թագաւորեցոյց զՍաւուղ... 5ա:*

Յովհաննու Ոսկեբերանի և Աթանասի և Պրոկղի, Նեքտառիոյ Կոստանդնուպօլսի հայրապետի ի սուրբ նախավկայն Ստեփանոս ասացեալ—*Զգայի արեգականս զերկնաւոր ծագելով... 13ա:*

Մասնաւոր իւիք ի գիւտ նշխարացն սրբոյն Ստեփանոսի և որք ընդ նմա. Գամաղիէլ Օրէնսդիրն, որ ի գործս առաքելոցն բարւոք խրատեաց զհրէայսն, և զՆիկոդիմոսն, որիչ է. ի ջրոյ և ի հոգւոյ ասաց զարքայութիւն ընդունել՝ Նեքտառի ասացեալ—*Զի որպէս ի գործս առաքելոցն... 21ա:*

Յանանէ վարդապետէ ասացեալ ի խաչելութիւն Պետրոսի—*Իսկ Պետրոս երկրորդ Ադամ... 25ա:*

Ի յիշատակի Պետրոսի և Պօղոսի՝ ի Յովհաննու աւետարանի մեկնութենէ—*Ասէ ցնոսա Յիսուս... 27բ:*

Յովհաննու Ոսկեբերանի՝ Գործոց մեկնութենէ՝ Յաղագս Յակովբայ՝ եղբօր Յոհաննու—*Ընդ ժամանակս ընդ այնոսիկ... 29բ:*

Պատճառ սուրբ աւետարանին Յովհաննու՝ ի Յովհաննէ Ոսկեբերանէ—*Որք արտաքին հանդիսիցն... 31ա:*

---

26 *Խորագիրը բերվում է ըստ ձեռագրի սկզբում դրված ցանկի:*

Մեկնութիւն աւետարանին Յովհաննու—*Դարձաւ Պետրոս և տեսանէր... 33բ:*

Չորից գլխաւորաց տօնիցս, որ են արոսք կարգեալ չորեքկերպեան. Մարգարէն Դաւիթ և Յակոբոս առաքեալն, Սուրբն Ստեփանոս և հաւատոյ ամոլքն՝ Պետրոս և Պօղոս և Որոտման որդիքն Յովհաննէս և Յակոբոս—*Արդ՝ սքանչելատես մարգարէն... 34բ:*

Սուրբ վարդապետացն ասացեալ՝ Վասն յայտնութեան և ծննդեան տեառն և հաւատոյ հաստատութեան՝ ընդդէմ երկաբնակացն. վկայաբանութեամբ Տեառնեղբօր Յակոբայ և Կիւրղի Երուսաղէմայ հայրապետին—*Յորժամ որ կամիցի շինուածս... 37ա:*

Յեկեղեցական պատմութենէ, զոր երկրորդեալ է Սարկաւագ վարդապետի—*Ի յարութենէն Քրիստոսի... 39բ:*

Սամուէլի և Պօղոսի և այլոց վարդապետաց՝ Վերլուծութիւն ընթերցուածոց գրոց—*Արդ՝ բազումք ի վարդապետաց... 41ա:*

Իմացուք և վասն խորհրդոյ աւուր Ճրագալուցիս, որ սկիզբն է և առաքոյ ուրօրեայ բուռյն և ի թիւ պահոց զկարգ կանովնին ունի—*Աստուածաբանն Գրիգորիոս...42բ:*

Յաղագս ծննդեանն Քրիստոսի և ներքս ի յայրին առ Մարովն—*Արդ մատնելով ի ներքս... 43բ:*

Իսկ ի կատարմանն Դանիէլի ընթերցումն, որ վասն Նաբուգոդոնոսորայ թագաւորին Քաղդէացւոյ—*Պատկեր կանգնեալ...48ա:*

[Պատճառք աւուրց արարչութեան]—*Ի յայտնութեան առաջի աւուրն. յառաջին աւուր արարչութեան... (ձեռագրում յուրաքանչյուր օրվան նվիրված է առանձին խորագիր)... 49ա:*

Յաղագս Պետրոսի և Արիստողոմայ յիշատակի. եւ թէ՝ վասն է՞ր զկնի Աստուածայայտնութեան աւուրց զյիշատակ Պետրոսի հայրապետի և Արիստողոմայ սարկաւագի տօնէ եկեղեցի Քրիստոսի, եւ զկնի զմեծի Անտոնի և այլս զթագաւորին Թէոդորոսի—*Այսպէս ուսաք յաւանդութենէ... 69ա:*

Յաղագս քառասնօրեայ գալստեան տեառն ի տաճարն—*Պարտ է գիտել... 70ա:*

Պատճառք առաջաւորի պահոցն—*Բազում պատճառք... 75բ:*

Յաղագս քառասներորդաց պահոցն—*Մերձեալ արքայութիւն... 78ա:*

Վասն Երայխայրիցն ընթերցուածի մեկնութենէն—*Ամենայագիծ ա. նշանն... 80ա:*

[Խորհուրդք աւուրցն աղուհացիցն]—*Ոմանք այսպէս ասացին... (ձեռագրում յուրաքանչյուր օրվան նվիրված է առանձին խորագիր)... 80բ:*

Վասն յարութեան Ղազարու ի շաբաթու—*Ի վեցերորդ շաբաթուս... 133բ:*

Մեկնութիւն աւետարանի—*Եւ էր մերձ զատկական... 137բ:*

Ի մեծի աւուր տօնի ողոգմենից, որ կոչի օրհնեալ օր և ի գալուստ տեառն յԵրուսաղէմ—*Յելանել նորա... 138բ:*

Արմաւենեաց տօնին—*Իսկ արմաւենեաց աւուր... 148ա:*

[Խորհուրդք Աւագ շաբաթու աւուրցս]—*Իսկ Զատկի շաբաթուն... (ձեռագրում յուրաքանչյուր օրվան նվիրված է առանձին խորագիր)... 149բ:*

Ասացեալ ի թաղումն տեառն—*Այր մի Յովսէփ, որ էր նախարար... 190ա:*

Թէոփիլոսի՝ աշակերտին Յովհաննու՝ Վասն գերեզմանի տեառն—*Նոր երկինք այսօր... 190բ:*

Խորհուրդ մեծի շաբաթին ճրագալուցի աւուրն և տեսութիւն նորին—*Արդ՝ զպատիւ աւուրս... 193բ։*

Ի յարութիւն Քրիստոսի և ի ս. պասէքն—*Յակովբ նահապետն յորժամ... 199բ։*

Իսկ մեծի աւուր պասեքին յերրորդ ժամուն ժողովին ի սուրբ յարութիւն և սկսանին ասել—*Ահաւոր և սքանչելի... 200ա։*

Ի խորհուրդ նոր կիւրակէին—*Նաւակատիք ասի... 202ա։*

Վասն շաբաթին և նորին խորհրդոցն—*Յիշեսցիր դու, ասէ, զօրն... 205բ։*

Հարցումն. զի՞նչ խորհուրդ է յիսուն օր պահք... Պատասխանի—*Յորժամ յաստուծոյ... 207բ։*

Յաղագս որ յետ յարութեան տօնեմք զյիսուն օր. զնոյն առանց պահոց և ծունր դնելոյ կատարեմք հանդերձ չորք աւետարանչօքն—*Ցուցանէ մեզ զգար-նանային... 208բ։*

Ի համբարձումն տեառն—*Ամենայն տօնք աստուածայինք... 209ա։*

Պատճառ երկրորդ գալստեան տեառն—*Զտօնս զայս տօնեն... 215բ։*

Վասն գալստեան սուրբ հոգւոյն—*Առաջինս և վերջինս... 217ա։*

Յաղագս նախահարցն—*Նախահարք ասին... 222ա։*

Յաղագս սուրբ մարգարէիցն—*Քանզի պարք մարգարէիցն... 223ա։*

Յաղագս Յովհաննու Մկրտչի՝ Անանիայի վարդապետի ասացեալ—*Ի ձեռն առեալ զիմաստս... 225բ։*

Սրբոյն Ստեփանոսի Սիւնեաց եպիսկոպոսի ասացեալ Վասն նախերգանի աղօթիցն, որ կատարի ի գիշերի—*Որպէս նեղեալ որ... 229բ։*

Ստեփանոսի Սիւնեաց եպիսկոպոսի ասացեալ Յաղագս եկեղեցործենացն կարգաց, թէ զինչ է խորհուրդն—*Վէմն անտաշ և անկոփ... 230ա։*

[Նորին] խորհուրդ և կարգաւորութիւն եկեղեցւոյ—*Ուրախ լեր եկեղեցիս... 231ա։*

Ստեփանոսի Սիւնեաց եպիսկոպոսի և այլոց վարդապետաց Ի խորհուրդ եկեղեցւոյ—*Նաւ է եկեղեցի... 236ա։*

Յաղագս տեառն ի խաչ ելանելոյն ի ժամուցն—*Խորհուրդս այս մեծ... 244ա։*

Յաղագս տապանակին—*Եւ արար Բեսելիէլ... 245բ։*

Վասն երից քառասնից նաւակատեացս, զի ոչ գոյ մասկերութիւն ի մէջ քրիստոնէից աղուհացիցն ամառան և յիսնակաց և ի մեծի տեառն չարչարանաց աւուրս—*Նաւակատիքս բարձրագոյն... 248ա։*

Պատճառ վարդավառի տօնին—*Վասն էր Յակովբոս... 249բ։*

Մեկնութիւն Առակացն Սողոմոնի—*Բազում ինչ իրօք Սողոմոն... 260բ։*

Վասն սուրբ առաքելոցն Քրիստոսի—*Սքանչացաւ տեսողն և ասէ... 266ա։*

Ներբողեան գովեստ համօրէն զնդից սուրբ առաքելոցն երկոտասանիցն. նախապատիւ պետացն գլխաւորաց—*Անթառամ սիրոյն ծաղիկք... 271բ։*

Յաղագս եւթանասուն և երկու առաքելոցն—*Ղամէք, որ յետ սպանանե-լոյն... 275ա։*

Վասն եւթանասուն և երկու սրբազան աշակերտացն Քրիստոսի—*Իսկ յեւ-թանասնիցն ճառք... 277բ։*

[Վասն աւետարանչացն][27]—*Ի նախնումն և յառաջին լինելութենէ... 282բ։*
Մեկնութիւն խորանաց աւետարանին—*Առաջին խորանն չորս դիմօքն... 287բ։*

*27 Բուն խորագիրն այլ է. ընդունեցինք սորին լուսանցքում կրկնվող խորագիրը, որովհետև բովանդակությամբ համապատասխանում է վերջինիս։*

Զաքարիայի հայոց կաթողիկոսի և Մովսէսի Քերթողի ասացեալ ի փոխումն Աստուածամօրն և պատկերի նորին—*Արարիչն արարածոց*... 288բ։

Վասն պատկերի Սրբուհւոյն—*Հրաւիրեալ լինէր Աստուածամայրն*... 293բ։

Ի Ղուկասու աւետարանէն ասացեալ—*Եւ եղ հրաման յՕգոստոս կայսերէ*... 296ա։

Պատճառ «Սուրբ աստուածին», որ հայք «խաչեցար» ասեն և հերձուածողքն՝ ոչ. «Սուրբ աստուած, սուրբ և հզօր, սուրբ և անմահ, որ խաչե[ցար]—*Սրբասացութիւնս այս*... 301ա։

Պատճառ սրբոյ խաչին—*Ամենայն բարեկամի և սիրելւոյ*... 305բ։

Ի սուրբ խաչն փրկչական—*Եւ ձգեաց Մովսէս զգաւազանն*... 310ա։

Վանական վարդապետի ասացեալ Յաղագս Տաւնյմտին—*Նաւ ուծով իմաստնացեալն Սաղովմոն*... 311բ։

Մեկնութիւն Առակացն, որ վասն Տզրկին—*Տզրկին երեք դստերք էին*... 314բ։

## № 4139

### ՏՕՆԱՊԱՏՃԱՌ

[Վասն Դաւթի և Յակոբայ]—*Սկիզբն տօնից և հոգևոր ուրախութեանց*... 1ա։

Սրբոյն Ստեփանոսի նախավկա[յ]ի—*Աստուածազարդ շուք տօնիս*... 7բ։

Պետրոսի և Պօղոսի—*Յաստուածարար սքանչելեացն բազումք են*... 13բ։

Յովհաննու և Յակոբա[յ]—*Աստուածահրաման պատուէր ունէր Իսրայէլ՝ զսկիզբն տօնին*... 18ա։

Յաղագս յայտնութեան ճրագալուցին—*Ըստ արարչագործ նորոյ արարչութեանս*... 23ա։

«Քրիստոս ծնեալ» ճառին պատճառ—*Աստուածայայտնութեան խորհուրդ*... 30ա։

Նախերգան յաղագս խորանաց աւետարանին Մարկոսի—*Մատեանք աստուածագիծք*... 40ա։

Պատճառք եւ թելադրութիւն չորից աւետարանացն. թէ որպէս գրեցան և յորժամ ժամանակս եւ թէ որպէս ի օրինօք յառաջինսն խորհուրդ նոցայ երկնէր եւ գայր—*Յարձելս, սար, անկել զդրախտն*... 45բ։

Ներսէսի կաթողիկոսի ժող[ովեալ] Մեկնութիւն աւետարանին Մարկոսի ի խնդրոյ նորուն եղբօր Գրիգորիսի՝ առաջին վերադիտողի հայոց—*Սիրոյ զաւրութիւն զերազանց է*... 51ա։

Պատճառ սրբոյն Յովհաննու Կարապետին—*Բազմադիմի են ճանապարհ իմաստութեան*... 62բ։

Յիշատակ Պետրոսի հայրապետի Աղեքսանդրու եւ Արիստոդմի—*Եթէ զինչ պատճառի այսր երեք տօնք*... 73ա։

Պատճառք առաջաւորաց—*Յոլովք են բանք վասն այսր պահոց*... 74բ։

Խորհուրդ Տեառնընդառաջի—*Ի փետրուարի ամսոյ, որ օր ԴԺ*... 76ա։

Յաղա[գս] քար[ուց]՝ Պօղոսի, Սամուէլի, Գրիգորի Վասն աղուհացից—*Խորհուրդք եկեղեցւոյ նման են զանձի*... 81բ։

Պատճառ երկրորդ կիրակէին—*Արդ՝ զոր ինչ ընթերցմանք են այսր աւուր*...89ա։

Պատճառ երրորդ կիրակէի—*Սրանչելահրաշք են խորհուրդք միաշաբաթու աղուհացիցն... 89բ:*

Պատճառ չորրորդ կիրակէին—*Սրանչելահրաշ համեմատութեամբ կա-պեալ... 91ա:*

Տեսութիւն անառակացն, Տեսութիւն Մարգարէին Եսայեայ. *91բ:*

Տեսութիւն առաքելոյ, Տեսութիւն ճաշոյ անառակին. *92ա:*

Պատճառ հինգերորդ կիրակէին—*Ահաւոր եւ մեծ է խորհրդոյն այս դո-րութիւն... 92բ:*

Կարգ ի խորհրդածութիւն վեցերորդ կիրակէին—*Մեծազօր արարչական հրաշագործութիւնքն... 94ա:*

Յաղագս ուրբաթի եւ չորեքշաբաթի—*Բովանդակ խակ քառասնորդացս ուր-բաթի և չորեքշաբաթի... 96ա:*

Կանոն առաջին ուրբաթուն—*Կերպարան ընթերցածիս ցուցանէ... 98ա:*

Յաղագս Բ-որդ շաբաթուս, այլեւ ձեւ կանոնի—*Այսր շաբաթու կանոն ի սուրբ Յարութիւն կատարի... 100ա:*

Կանոն երրորդ շաբաթին աւուրն—*Եւ նստաւ կինն և սնոյց զորդին իւր... 101ա:*

Կանոն աւուրն չորրորդ շաբաթի—*Այս կանոն ի Սիոն կատարի... 101բ:*

Կանոն հինգշաբաթին աւուրն—*Եւ այս կանոն ի Յարութեան կատարի... 102բ:*

Կանոն ուրբաթուն—*Եւ սոյն եւս աւուր կանոն ի Սիոն կատարի... 103ա:*

Կանոն երրորդ շաբաթուն չորեքշաբաթին—*Եւ այս կանոն ի Սիոն... 104բ:*

Կանոն երրորդ ուրբաթին—*Աստանօր զգուշացուցանէ զապաշխարողսն... 105բ:*

Կանոն չորրորդ չորեքշաբաթին—*Արդ՝ երթեալ ժողովեսցես զծերակոյտ... 107ա:*

Կանոն չորրորդ ուրբաթին—*Եւ եղև յետ Խ տւընջեան և Խ գիշերոյ... 108ա:*

Կանոն հինգերորդ չորեքշաբաթուն—*Եւ ասա առու Մովսէս յաստուծոյ... 109բ:*

Կանոն հինգերորդ ուրբաթին—*Ի ժամանակին յայնմիկ ասէ ցիս տէր... 110ա:*

Կանոն վեցերորդ չորեքշաբաթին—*Եւ ասէ տէր ցՄովսէս... 111բ:*

Կանոն վեցերորդ ուրբաթին—*Քանզի երկիրն, յոր մտանելոց... 112բ:*

Կանոն վեցերորդ դարուն—*Գիտելի է և այս, զի մեծն Աբրահամ ի ծերու-թեան... 114ա:*

Կարգ և խորհուրդ յարութեանն Ղազարու—*Այս տօն, զոր կատարէ եկեղե-ցի ի շաբաթու... 116ա:*

«Էր ոմն հիւանդ Ղազար»—*Բազումք ի մարդկանէ յորժամ տեսանեն... 119ա:*

Խորհուրդ յաւանակաւ գալստեանն տեառն յԵրուսաղէմ—*Զսուրբ արմա-ւենեացս օր, զոր և օրհնեալ անուանեցին... 130բ:*

Ի բանն որ ասէ. «Եւ գան յԵրիքով», աւետարան ըստ Մարկոսի—*Զմեծա-սքանչ և զահեղերաժաշտ ծագումն իմանալի... 134ա:*

Կանոն մեծի երկուշաբաթին—*Այսր շաբաթու պահք մեծի պասեքին... 145բ:*

Ի սկիզբն Արարածոց մեկնութեան, զոր արարեալ է սրբոց վարդապետաց—*Սկիզբն իմանալոյ ի մեզ վասն լինելութեան... 147բ:*

Ի բանն, որ ասէ. «Եւ ասաց աստուած արասցուք մարդ ըստ պատկերի»—*Բնութիւն է այս անկեալ յայգւոյ* յոյժ բաղձանօք... 154ա:*

Կանոն մեծի աւուր երեքշաբաթի—*Ըստ կարգի առաջնոյն... 160բ:*

Կանոն մեծի չորեքշաբաթի—*Երեկոյս աստուած Աբրահամու... 162բ:*

Ի բանն Պօղոսի, որ ասէ. «Քրիստոս գնեաց զմեզ յանիծից օ[րինացն]».—*Ասէ աստուածային բանն... 164ա:*

Յայտարարութիւն խորհրդոյ մեծի հինգշաբաթին—*Այսմիկ աւուր սահմանեալս կանոն... 166ա:*

[Պատճառ առ կորնթացիս թղթոյն Պօղոսի]—*Արդ այս թուղթ երրորդ է ըստ կարգի... 168ա:*

Տեառն Եփրեմի ասացեալ [բան] խորհրդաւոր—*Զուարթունք ոչ պղտեղացան... 173բ:*

Կանոն մեծի ուրբաթի չարչարանացն տեառն—*Զկնի մեծի երեկոյի հնոյն... 175ա:*

Յեսա[յ]եա[յ] ի խորհուրդ մեծի ուրբաթին, զոր արարեալ է սրբոյ և զերահրաշ վարդապետին տեառն Լամբրօնոյ—*Աստուածա[յ]ին խորհրդոցն հաղորդապետն... 178ա:*

Թէ զինչ խորհուրդ յայտնէ նրագալուցին առաջին սաղմոսն եւ կամ զինչ նշման երկրորդ սաղմոսն, եւ կամ զինչ ԺԴ ընթերցուածքն, եւ զիարդ օրհնակաւ առաջաւորի պահոցն եւ ճառասնորդացն գլխաւորեալ է իւր սկսմամբ և կատարածիւ—*Զի որպէս զգալի արարածք... 192բ:*

[Յաղագս] յարութեան տեառն—*Արդ՝ յարութեան խորհուրդ մեծապատիւ է և հրաշալի... 197ա:*

Վասն կիւրակէի, որ է միաշաբաթ—*Արդ ասասցուք զմիաշաբաթին... 199ա:*

Սրբոյ վարդապետին Գրիգորի՝ Ի սուրբ զատիկ և ի կենսաբեր յարութիւն տեառն. միաբանութեամբ աւետարանչացն բանից և բացայայտումն կանանցն նշաբերից—*Այսօր յարեաւ Քրիստոս ի մեռելոց և յարոյց ընդ իւր... 200ա:*

Վասն յիսներորդ աւուր յարութեան—*Առաջին յիսներորդի աղուհացից պահոցն... 216ա:*

Մեկնութիւն սրբոյ աւետարանին Յոհաննու «յսկզբանէ [էր] բանն»—*Ի սկզբանէ էր բանն... 217բ:*

Յաղագս նաւակատեացն՝ Ե[ր]բ [է] եկին, զոր արարեալ է սրբոյ Գրիգորին Աստուածաբանին—*Ի կատարման աստուածային տնօրէնութեան... 223ա:*

Ի նեղզութիւն—*Յորժամ զայր Գրիգոր յԱթենս... 227բ:*

Պատճառ «ի պահու խմում կացից»—*Երանելի սուրբ հայրապետքն... 228բ:*

Յաղագս Է աւուրն արարչութեան, զոր արարեալ է սուրբ վարդապետին Վարդանայ—*Անդրանիկ օրս միաշաբաթուս...235ա:*

Պատճառք տօնի աշխարհամատրանն, եթէ վասն է՞ր յայսմ աւուր կատարի, սոյն ինչ ի Դաւթայ յաւելուած յառաջնոցն բանս—*Ի շինելն Կոստանդիանոսի Մեծի զԵրուսաղէմի եկեղեցին... 240բ:*

---

* *Բնագրում՝ յոգոյ:*

Յաղագս վերացման տեառն, ի Ղուկայ աւետարանէն—*Եւ մինչդեռ տակաւին Հաւատային... 244ր:*

Յայլ գրոց վկա[յութիւնք յաղագս] վերացմանն տեառն և ամպաչու ճանապարհին—*Ամովսականն որ ասէ... 249ր:*

[Յաղագս] Համբարձման տեառն—*Յամենայն տօնս ակրունիս... 249ր:*

Յաղագս երկրորդ գալստեան և ամպաչու ճանապարհին—*Եղիցին զօտիք Հեր պնդեալ... 252ր:*

Ի սուրբ և ի հրաշափառ իջու[մն] հոգւոյն սրբոյ յերջանիկ դասս առաքելոցն—*Բարի է սատուած և բարոյ ամենայնի արարիչ... 254ր:*

Յաղագս հոգւոյն գալստեան փոքր ինչ պատճառ—*Յառաջին ժամանակս, ի միջինս և ի վերջինս միևնոյն է խնամք... 258ր:*

Խորհուրդ հիմնարկութեան եկեղեցւոյ—*Ժողովէ աստուածա[յ]ին քահանայապետն ի տեղին... 265ա:*

Կանոն նաւակատեաց օրհնութեան եկեղեցւոյ—*Մտանեն երեկո[յ]ին ի Հրակումն... 266ր:*

Յաղագս նաւակատեաց եկեղեցւոյ, որ զկնի Պենտակոստէին Ի-ն Տրէ ամսոյ, զոր Հայաստանեայցս տօնէ եկեղեցի. ի Դաւթայ շարագրեալ զաւանդս իմաստնոց—*Ի բազմաց զանազանից կարծեաց... 270ա:*

Յաղագս խորհրդեան եկեղեցւոյ—*Բարեբանեցէք զաստուած յեկեղեցիս... 273ա:*

Յաղագս տապանակին խորհուրդ—*Եւ արար Բեսելիել զտապան... 280ր:*

Յաղագս տօնի վարդավառին—*Երեեյի արեգակն ի ծագելն իւրում... 285ր:*

Այլ պատճառ—*Արդ՝ գիրք սուրբք ասեն... 292ր:*

Յաղագս տօնի վարդավառին—*Ուղեղնացք ի ճանապարհս շատ ինչ տեսանեն... 294ա:*

Յաղագս Շողակաթին՝ սուղ ինչ պատճառ բանից—*Անզրգւելի հիմն հաստատութեան... 300ր:*

Ի ննջումն աստուածամօրն—*Ի գերեզմանց լուսոյն պայծառացեան... 305ր:*

Եւ յամսեանն վեցերորդի առաքեցաւ Գաբրիէլ հրեշտակ աստուծոյ ի քաղաք մի գալիլեացւոց, որում անուն էր Նազ[արէթ] առ կոյս խօսեցեալ առն—*Ամիս վեցերորդ զնիսան կոչէ... 312ր:*

Յաղագս եկեղեցւոյ, յԱռակացն Սողոմոնի—*Աստուածային իմաստութեամբ... 317ր:*

Եւ եկեալ Յիսուսի ի կողմանս Փիլիպեա Կեսարեան—*Պարտ և արժան է իմանալ... 323ր:*

Ի բանն, որ ասէ. «Այլ Քրիստոս եկեալ քահանայապետ» Վարդանայ սրբոյ վարդապետի արարեալ—*Ի գերազանց լուսոյն պայծառացեան արարածք... 327ր:*

Յաղագս տօնի սրբոյ խաչին եւ նորին նաւակատեաց, որ ի Դժ-ին կատարի սեպտեմբերի ամսոյ, ի փառս աստուծոյ—*Ի ժամանակս Մեծին Կոստանդիանոսի... 334ա:*

Ի տօնի սրբոյ և փառաւոր խաչին Քրիստոսի, ի բանն Դաւթի, որ ասէ. «Օրհնեալ ես աստուածազարդ և Քրիստոսապսակ փայտ»—*Ամենայն բարեկամի և սիրելոյ... 343ր:*

Ի բանն աւետարանին Յովհաննու սիրելոյ և աւետարանչի—*Եւ նորա առեալ տանէին զնա... 350բ։*

Յաղագս որ «զսուրբ աստուածն» երգեն յեկեղեցիս Հայաստանեայց «խաչեցար» ասելով—*Վասն որդւոյն աստուծոյ սրբասացութեան...355ա։*

Տէր զլուր քո լուա և երկեա—*Զարդ գեղեցկութեան երկնից... 361բ։*

Սուրբ վարդապետին Վարդանայ արարեալ ի բանս տեառն. «Հայր մեր, որ յերկինս»—*Ի տես եղանակաց, զոր արար աստուած... 367ա։*

Կիրակոսի սուրբ վարդապետի արարեալ ի սաղմոսն ՃԹ, որ ասէ. «Ասաց տէր ցտէր իմ, նիստ ընդ աջմէ իմմէ մինչև եդից»—*Կանուխ և ամէնիմաստ գիտութեամբ իւրով աստուած... 372ա։*

Ի Յայտնութեանցն Յոհանու, Մեկնութիւն Անդրէի և Արէթասայ եպիսկոպոսի Կեսարու Կապադովկեցւոյ Վասն խռովութեան եկեղեցւոյ, յոր ի սկզբանէ և որ ի ձեռն Ներինն, զոր յանկեալ սուրբ վարդապետն Վարդան—*Եւ բացաւ տաճարն աստուծոյ, որ յերկինս... 378բ։*

Նախերգան սոյն ասացուածոյ Վարդանայ վարդապետին ասացեալ—*Գլուխ պատուիրանացն աստուծոյ... 386ա։*

Նորին վարդապետի արարեալ ի Կորնթացւոց առաջին թղթոյն, որ ասէ. «Գոհանամ զաստուծոյ վասն ամենեցուն ձեր: Առաւել յեզուօք խօսիմ, այլ ի մէջ եկեղեցւոյ կամիմ բանս Ե մտօք խօսել, զի զայլս խրատիցեմ, քան զբազում բանս լեզուաւ խօսել—*Արարչագործն աստուած Հոգին ճշմարտութեան... 387ա։*

Յառաջին թղթոյն Թեսաղոնիկեցւոց. «Ոչ կամիմ, եղբարք, եթէ ագէտ իցէք վասն ննջեցելոցն. զի մի՛ տրտմիցիք, որպէս և այլքն, որոց ոչ գոյ յոյս»—*Գլուխ քրիստոնէութեան... 395ա։*

Գրիգորի սքանչելագործի՞ (հարցականը բնագրային է, մերը չէ—*Փ. Ա.*) բան—*Ով սնոտի ասէր, խախուտամեծար, դաւաղաղեցեր... 409ա։*

Պատճառ Հոռոմայեցւոց թղթոյն Պօղոսի առաքելոյն—*Բազումք հաւատային ի Քրիստոս... 411ա։*

Այլ պատճառ առաքելական թղթոցս—*Յաղագս թղթոց առաքելոյն այսպէս իմանալի է... 412ա։*

Գէորգայ մեծի գիտնականի Կաղն կոչեցելոյ՝ Յաղագս շարակարգութեան ԺԴ թղթոցն Պօղոսի—*Արդ՝ թուղթն Հռոմայեցւոց... 412բ։*

Այլ օրինակ խորհրդածութեան թղթոցս նոյն Գէորգայ ասացեալ—*Այլ թէ վասն էր Հռոմայեցւոց թուղթն յառաջագոյն եդեալ է... 414ա։*

Այլ համեմատութիւն զուգամասն թղթոցդ, նոյն Գէորգայ ասացեալ—*Են և այլ իմն գնայք թղթոցդ... 415ա։*

Ի Կորնթացւոց առաջին թղթոյն—*Այսպէս է, թէ Քրիստոս քարոզի... 420ա։*

Այլ զի ուսցիս, թէ վասն այնր ժամանակի խաւսի—*Յորժամ տացէ զթագաւորութիւն աստուծոյ և Հօր... 425բ։*

Պատճառ թղթին, որ Առ յեբրայեցիսն—*Ի սկզբան թղթոյս այսորիկ ծուփ և խնդիր... 429ա։*

Ի Փիլիպեցւոց թղթոյն—*Զայս խորհեսցի իւրաքանչիւր որ... 435ա։*

Ի բանն, որ ասէ. «ունել ունէր, և առաջինն՝ յեբրայեցւոց»—*Բազմաց ի Հեբրայեցւոցն... 439ա։*

Եբրայեցւոց թղթոյն—*Այսուհետև ունիմք համարձակութիւն... 446ա։*

Ի Կորնթացւոց առաջին թղթոյն—*Նախ վասն ճշմարիտ քարոզութեան...* *448բ։*

Ի Հռոմայեցւոց թղթոյն—*Ինձ այսպէս թուի... 452ա։*

Վասն սուրբ առաքելոցն—*Մարգարէն սքանչացաւ և ասէ... 460ա։*

Վասն սուրբ մարգարէիցն—*Քրիստոս ասաց՝ ամենայն մարգարէք... 462ա։*

Պատճառ մարտիրոսաց—*Յորժամ լուսաւորին հարք հոգևորք... 464ա։*

Յաղագս նախահարցն—*Նախահարք ասին Աբրահամ... 467ա։*

Յոհանու աւետարան եւղաբերիցն—*Յետ այսորիկ, յետ անցիցն... 468ա։*

*Տոնապատճառների և Ճառընտիրների համեմատությունից պարզվում է, որ մի շարք հեղինակներ, երբեմն իրենց միևնույն երկերով տեղ են գտել ինչպես Տոնապատճառներում, այնպես էլ Ճառընտիրներում։ Դրանց մեջ կան նաև անհայտ հեղինակների որոշ երկեր, որոնք վերաբերում են միևնույն հարցերին։ XII դ. վերջերից սկսած Ճառընտրի և Տոնապատճառի միջև տարբերությունները ավելի են խորանում։ Տոնապատճառը սկսում է առավել ինքնամփոփ մնալ. հետևել որոշակի սեղմ նպատակի՝ հիմնականում տոների ակունքների ու նշանակության և որոշ կրոնական գրքերի «պատճառների» բացահայտմանը։ Ընդգրկված նյութերը հազվադեպ են շեղվում այս նպատակից։ Մինչդեռ Ճառընտիրները, կաշկանդված չլինելով եկեղեցական այս կամ այն սեղմ նպատակով, ընդգրկում են իրենց մեջ բազմազան նյութեր (քաղվածքներ պատմիչներից, տեսիլքներ, վարքաբանական գրվածքներ, ներբողներ և այլ հրաշապատում գրվածքներ), որոնք Տոնապատճառների մեջ մուտք գործել չէին կարող։*

*Տոնապատճառն ընդհանրապես տեսական բնույթի ու նշանակության աշխատություն է և, ըստ երևույթին, չի ունեցել առօրյա կիրառություն։ Այն ավելի շատ օգտագործվել է վանական դպրոցներում ուսուցողական նպատակներով։*

*Նրա մեջ էլ հետաքրքիր ու շահեկան շատ նյութեր կան, որոնք բավարար հիմք են տալիս մեր օրերի պատմաբաններին, գրականագետներին, լեզվաբաններին, ազգագրագետներին և, մանավանդ, բանասերներին։ Այն, իբրև ժողովածու մեզ հասած ձեռագրերում, մանավանդ հնագույնների մեջ, տարբեր տեսքով ու ծավալով է ներկայանում։ Այս խոսում է այն մասին, որ դրա կազմության և խմբագրման գործում, գոնե մինչև X—XII դդ. ուժեղ, հեղինակավոր ձեռքի միջամտություն չի եղել։ Իսկ կասկածից դուրս է, որ մինչև այդ դարերը այդ ժողովածուն արդեն ստեղծվել էր, սակայն ե՞րբ։*

*Մաշտոցյան Մատենադարանի № 1007 Տոնապատճառը, ընդօրինակված XI—XII դդ. ընթացքում, բովանդակաչափ տարբերվում է ավելի ուշ գրված Տոնապատճառներից, ունի հիշատակարան, որտեղ, ի միջիայլոց, գրված է. «Եւ մերս (իմա՝ հայկական Տոնապատճառը) բերաւ աշխարհի սրբոյն Երուսաղէմէ, բերաւ յետոյ կարգեալն ի Կիւրղէ։ Արդ՝ զոգա բանս առեալ սրբոյ հայրապետին մերո Զաքարիայի և այլ սրբոց վարդապետաց, լուսաւորեցին զամենայն հաւատացեալս ի Քրիստոս և ցուցին մեզ զտօնս և պատճառ նոցա...»[28]։*

*Ինչպես տեսնում ենք, Տոնապատճառն ավանդաբար կապվում է ամենից առաջ Արիստակես կաթողիկոսի (IV դ.) անվան հետ։ Մեզ հավանական չի թվում, որ նա որևէ առնչություն ունի Տոնապատճառի կազմությանը, բայց այս ավանդությունը խոսում է Տոնապատճառի հնության մասին։ Հիշատակարանի արվ-*

---

28 *Մատենադարան, ձեռ. № 1007, էջ 466բ։*

յլներով Զաքարիա կաթողիկոսը, որ, անշուշտ, Ձագեցին պետք է լինի (աթոռակալել է 855—875 թթ.), մասնակցել է Տոնապատճառի ձևավորման ու ճոխացման աշխատանքներին, բայց թե ինչպե՞ս և ի՞նչչափով, հայտնի չէ։ Սակայն ստույգ է, որ հնագույն Տոնապատճառների մեջ կան Զաքարիային պատկանող մի քանի մանր երկեր։

Հիշատակարանները վկայում են նաև, որ Զաքարիայից բացի մի շարք այլ վարդապետներ այս կամ այն չափով մասնակցել են մեզ հետաքրքրող ժողովածուի խմբագրման ու ճոխացման գործին[29]։ Սակայն Տոնապատճառի, որպես ուրույն միավոր-ժողովածուի, կազմությունը բանասիրության մեջ ընդունված է կապել Սամվել Կամրջաձորեցու անվան հետ, ելնելով գրավոր աղբյուրներում պահպանված մի քանի հաղորդումներից։

Սամվել Կամրջաձորեցին եղել է բանիմաց մատենագիր և հմուտ երաժիշտ։ Գործել է X դ. վերջերին և XI դ. սկզբներին։ Մելիտինեի Թեոդորոս Մետրապոլիտին իբրև պատասխան գրել է մի թուղթ, որի մասին Մատթեոս Ուռհայեցին հետևյալն է հայտնում. «Վարդապետն հայոց Սամուէլ գրեաց նորա (Թեոդորոսի—Փ. Ա.) պատասխանի վայելուչ և ցանկալի բանք, որ եղև իսկ հաճելի թուղթն այն ամենայն լսողացն, եւ առաւել մեծարեալ եղեւ առաջի Թեոդորոսի պատրիարքին»[30]։ Նա ունի նաև ճառեր։ Ասողիկը Սամվելին ճանաչում է որպես «իմաստակն Սամուէլ՝ բազմաշնորհն ի գիտութիւնս գրոց սրբոց և յերգս երաժշտութեանց»[31]։ Սմբատ Սպարապետը, կրկնելով Ուռհայեցուն, պատմում է, թե ինչպես Բյուզանդիայի Վասիլ կայսրը Սամվել Կամրջաձորեցուն հրավիրել է «յատենի» վիճաբանելու հույն վարդապետների հետ, որոնց պարտության մատնելով՝ նա փայլուն հաղթանակ է տարել[32]։

Ինչպես տեսնում ենք, Սամվել Կամրջաձորեցին պատահական անձնավորություն չէր և կարող էին նրան վստահել Տոնապատճառի կազմության կարևոր ու պատասխանատու գործը։

Սակայն այդ մասին մեր պատմիչների խոսքը, դժբախտաբար, որոշակի չէ։ Նրանք ստույգ չեն հավաստում այն, որ Սամվել Կամրջաձորեցու կազմած ժողովածուն հենց Տոնապատճառն է։ Ահա թե ինչ է գրել այս առիթով Մատթեոս Ուռհայեցին. «Եւ սկիզբն արար Սամուէլ յառաջին աւուրն յարարչութեանէ և գայր հասանէր մինչև ցվերջն պատկեր օրն և զամենայն պատճառ պատճէնից ըստ առաջին իմաստնոցն հաստատուն կացուցանէր»[33]։ Իսկ Ասողիկը վկայում է, «Որ զյիշատակ մարտիրոսացն միաւորեալ ի գիր ամփոփեաց»[34]։ Կարելի՞ է, արդյոք, այս հիշատակություններից հետևցնել, որ Սամվել Կամրջաձորեցու կազմած ժողովածուն եղել է, անտարակույս, Տոնապատճառ և ոչ, ասենք, Հայսմավուրք կամ Տոնացույց։ Եթե նա իր գործն սկսել է այն բանից, որ արարչության առաջին օրը հիմք է ընդունել և վերջացրել է վերջին օրով և, հիմնականում, «մարտիրոսաց» մասին նյութեր է ամփոփել, ապա ավելի հավանական է ենթադրել, թե նրա այդ աշխատանքը առաջին հերթին առնչվելու է Հայսմավուրքին։ Չէ՞ որ Տոնապատճառի մեջ տոների կամ նյութերի ամենօրյա

29 Մատենադարան, ձեռ. № 3795, էջ 291բ—292ա։
30 Մ. Ուռհայեցի, Ժամանակագրություն, Երուսաղեմ, 1869, էջ 47։
31 Ս. Ասողիկ, Պատմութիւն տիեզերական, Պետերբուրգ, 1885, էջ 174։
32 Սմբատ Սպարապետ, Տարեգիրք, Վենետիկ, 1956, էջ 21—22։
33 Մատթեոս Ուռհայեցի, նշվ. աշխ. էջ 54—55։
34 Ստեփանոս Ասողիկ, նշվ. աշխ. էջ 146։

բաժանում չկա, մինչդեռ Հայսմավուրքը այդպիսին է հնագույն օրինակներում, իսկ, բացի դրանից. «մարտիրոսաց» վարքագրությունները ևս ամփոփված են ոչ թե Տոնապատճառի, այլ Հայսմավուրքի և մասամբ միայն Ճառընտրի մեջ։ Սակայն կա նաև մի այլ ուշագրավ փաստ. հունական Հայսմավուրքի կազմությունը սկսել է համեմատաբար ավարտուն վիճակ ստանալ Վասիլ Բ կայսեր ժամանակ (976—1025)[35]։ Այս այն կայսրն է, որ Սամվել Կամրջաձորեցուն հրավիրել է մասնակցելու դավանաբանական հարցերի, ուստի և եկեղեցական տոների ու նման խնդիրների շուրջ ստեղծված հույն գիտնականների վիճաբանություններին[36]։ Շատ հավանական է, որ այդ առիթով արծարծված է եղել նաև Հայսմավուրքի կազմության հարցը։ Սամվել Կամրջաձորեցին, ծանոթանալով բյուզանդական եկեղեցու կողմից օգտագործվող Հայսմավուրքին, հայրենիք վերադառնալով, բնականաբար, կարող էր քայլեր դիմել այդպիսի մի հայկական ժողովածու ստեղծելու համար, մանավանդ, որ ինչքան մեզ հայտնի է, մինչ այդ Հայսմավուրք ժողովածու Հայաստանում գոյություն չի ունեցել[37]։

Այդ դեպքում ինչպե՞ս պետք է բացատրել «պատճառ պատճէնից» վերահիշյալ արտահայտությունը։ Ըստ Նոր հայկազյան բառարանի «պատճէն» բառը, իր սովորական իմաստից բացի, նշանակում է նաև «գլուխ բանի», այսինքն որևէ երկի մի գլուխ կամ բաժին[38]։ Մեր կարծիքով, հիշյալ արտահայտության մեջ էլ «պատճէնից»-ը կիրառված է այս իմաստով։ Ուստի, ամենայն հավանականությամբ «պատճառ պատճէնից» ասելով՝ հասկացվել է կազմված ժողովածուի գլուխների կամ միավորների մասին տրված բացատրություն։ Իսկ այս կարգի աշխատանքը պատշաճում է Տոնապատճառին, որտեղ, ինչպես արդեն նշել ենք, քիչ չեն «պատճառները» այս կամ այն տոնի, երբեմն էլ այս կամ այն կրոնական երկի վերաբերյալ։

Առանց այս հիշատակարանի էլ, ինչպես տեսանք վերը, Ս. Կամրջաձորեցու անունը վաղուց արդեն կապվել է Տոնապատճառի կազմության հետ։ Ոսկեփորիկի և մեզ հասած «Գրոց ցանկեր»-ի մեջ որոշակի վկայված է, որ «Սամուէլ Կամրջաձորոյ հայրն արար զՏօնապատճառն»[39]։ Կա նաև Գևորգ Մեղրիկ վար-

---

35 Π. Δρανδάκη, Μεγάλη Ἑλληνικὴ Ἐγκυκλοπαιδεία, τόμ. ΙΑ., σελ. 292, τόμ. ΚΒ., σελ. 550.

36 Ս մ բ ա տ Ս պ ա ր ա պ ե տ, նշվ. աշխ. էջ 21, 22։

37 Այս կապակցությամբ կարևոր է նկատել, որ 991—992 թթ. Հովսեփ Կոստանդնուպոլսեցին հունարենից թարգմանել է մի յուրովի Հայսմավուրք։ Բնական է, որ դրա ընդգրկած նյութերը բացառապես պիտի վերաբերեին հունական եկեղեցու կողմից ընդունված սրբերին (այդ թվում նաև Գրիգոր Լուսավորչին և Հռիփսիմեանց)։ Պահպանված հիշատակարանի վկայությամբ թարգմանությունը կատարվել է հիշյալ նյութերը ժողովրդին ծանոթացնելու համար. կնշանակի՝ մինչ այդ դրանք անծանոթ են եղել։ Եթե թարգմանական այդ երկը իրոք Հայսմավուրքն է եղել, ինչպես կարծել են Ն. Ակինյանն ու Հ. Ոսկյանը (տե՛ս Ն. Ա կ ի ն յ ա ն, նշվ. աշխ., «Հանդէս ամսօրեայ», 1957, էջ 1—12, Հ. Ո ս կ յ ա ն, Ցուցակ հայերեն ձեռագրաց Մխիթարյան մատենադարանի, ի Վիեննա, 1963, էջ 692—693), ապա պետք է ընդունել, որ հայերը մինչ այդ Հայսմավուրք չեն ունեցել։ Բանասիրությունը առ այսօր հակառակը պնդելու փաստ չունի։ Այնպես որ, շատ բնական է թվում, թե հույներից անմիջապես հետո և նրանց օրինակով հայերն էլ (Սամվել Կամրջաձորեցի, Հովսեփ Կոստանդնուպոլսեցի և թերևս ուրիշներ) ստեղծել են Հայսմավուրք և այլ ժողովածուներ, մեզանում արդեն գոյություն ունեցող որոշ ատաղձի հիման վրա։

38 «Նոր բառգիրք Հայկազեան լեզուի», Բ, էջ 615։

39 «Նոր բառգիրք Հայկազեան լեզուի», Բ, էջ 901։ Տե՛ս նաև Հ. Ա ն ա ս յ ա ն, Հայկական մատենագիտություն, Ա, ներածություն, էջ LX:

դասպետի (XI դ.) հաստատ ու վստահելի վկայությունը. «Զատագող սուրբ գրոցս,—գրել է նա,—որ բովանդակեալ ունի յինքեան զխորհուրդս տօնից տէրունականաց, զոր սրբոց հարցն մերոց ոգեշահ աշխատութեամբ բացայայտեցաւ ի սրբոյն Գրիգորիսէ և Յովհաննէսի իմաստասիրի և Սամուէլի վարդապետի շարադրեցաւ ի քարտեսս...»[40]:

Կարծում ենք, որ վերոհիշյալ փաստերից կարելի է ստույգ հետևցնել, թե Սամվել Կամրջաձորեցին մաս ու բաժին ունի և՛ Հայսմավուրքի, և՛ Տոնապատճառի կազմության սկզբնական աշխատանքներում:

Դժվար է ասել, թե հատկապես ինչպիսին է եղել նրա կատարած գործը, ինչ ծավալ, նյութերի ինչպիսի ընտրություն ու տեսք են ունեցել նրա կազմած ժողովածուները: Այն, ըստ երևույթին, հունականի նմանությամբ կազմված մի ժողովածու է եղել, գուցե և մեզ հասած հայսմավուրքներից այն մեկի նման, որն ըստ Մ. Ավգերյանի ո՛չ Տեր Իսրայելի, ո՛չ էլ Կիրակոսի ու Ծերենցի խմբագրածների պես է[41]: Թերևս այն «Ատոմագիր»-ի կամ «Հոռոմագիր»-ի նման է եղել, կամ էլ դրանց մի տարբերակն է հանդիսացել ու դրանց ճանապարհով վեր է աճել ու նույնացել Հայսմավուրքին: Իսկ նրա Տոնապատճառը, մեր կարծիքով, ունեցել է մոտավորապես № № 2021, 2049, 3795 ձեռագրերի տեսքը. այսպես ենք կարծում, որովհետև այս խմբի Տոնապատճառները ընդհանուր առմամբ նման են իրար և դրանց համար Սամվել Կամրջաձորեցուց հետո այլ հեղինակ չի մատնանշվում կամ ենթադրվում: Ուստի, № 2021 ձեռագրի առաջին էջի վրա իրավացիորեն է գրվել.

ԶՏօնապատճառ գիրքս գովելի
Արարեալ է Կամրջաձորոյ
Սուրբ հօրն Սամուէլի[42]:

Սամվել Կամրջաձորեցուց հետո որպես Տոնապատճառ ժողովածուի խմբագիր հիշվում է Հովհաննես Գանձակեցին (XIII դ.)[43]: Այս կապակցությամբ եղած տվյալները քիչ են և առայժմ թույլ չեն տալիս հանգամանորեն խոսել նրա կատարած աշխատանքի բնույթի ու արդյունքի մասին:

Ղ. Ալիշանը վկայակոչում է մի հիշատակարան, որտեղ ասված է, թե «Կիրակոս վարդապետ ի թուականին հայոց ՉԲ (1253—1254) աշխատեալ յաւել ի նախակարգեալ Տօնապատճառս՝ ճառս համառօտ հարիր և երկոտասան»[44]: Պետք է ասել, սակայն, որ այս ավելի շուտ կարող է վերաբերել Հայսմավուրքին (ինչպես և գիտել է բազմավաստակ բանասերը), որովհետև մեզ հայտնի և ոչ մի Տոնապատճառ 112 նյութ իսկ չունի, ուր մնաց՝ այդքան ճառ[45]:

Տոնապատճառի կազմությունը այնուհետև առնչվում է Վարդան վարդապետի անունը: «Տօնապատճառ, զոր արարեալ է Վարդան վարդապետի»—

40 Գրիգորիս Արշարունեաց Քորեպիսկոպոսի Մեկնութիւն ընթերցուածոց, Վենետիկ, 1964. Ներածություն, էջ 27:

41 Մ. Ավգերյան, նշվ. աշխ. ԺԱ, ներածություն, էջ ԿԴ:

42 Մատենադարան, ձեռ. № 2021, էջ 1ա:

43 Մ. Ավգերյան, նշվ. աշխ. ԺԱ, ներածություն, էջ ՂԴ:

44 Ղ. Ալիշան, Հայապատում, էջ 107:

45 Անդ, էջ 107:

վկայում են մեզ հասած որոշ ձեռագրեր[46]։ Մատենադարանի № 2041 ձեռագրի սորին լուսանցքներից մեկում այս կապակցությամբ կա հետևյալ կողմնակի, բայց ուշագրավ վկայությունը. «Յայսմ տեղւոջ սուրբ և գերամարդուր վարդապետն Վարդան յօրինող և զանազանող այսմ մարգարէութեան մեծ յոյս և համարձակութիւն է եղեալ նեղուցելոց և յուսահատեցելոց սքանչելի օրինակս։ Հոգին սուրբ փառաւորեսցէ զնա և դասեսցէ ընդ սրբոց աստուածաբանիցն...»[47]։ Իսկ 1267 թվականին Հաղբատում ընդօրինակված՝ Մատենադարանի № 4139 ձեռագրում պահպանված մի շատ ուշագրավ հիշատակարանից տեղեկանում ենք, որ Տոնապատճառը կազմել է այն Վարդան վարդապետը, որը միաժամանակ նշանավոր անձնավորություն է եղել, ունեցել է մանկավարժական և գրական լայն գործունեություն և հեղինակել է «Մեկնութիւն Սաղմոսաց Դաւթի»-ն։ Ի դեպ, այս ձեռագիրը նրա կազմած Տոնապատճառն է հենց, և հիշատակարանը գրվել է նույն Վարդանի աշակերտ Տիրացու գրչի կողմից։ Ահա այդ հիշատակարանը. «Ի մերումս բացափայլեալ ժամանակի յամենեցունց ոգիս արեգակնածագ փայլմամբ նշողիւք լուսաւորե[ա]լ ըստ բացման աչաց և ականջաց ներքին մարդոյն՝ արանց, միանգամայն և կանանցն, մեծաց և փոքունց, եկեղեցականաց և աշխարհականաց և ամենայն չափու հասակի, նաև օտարա[ցելոց] եւս։ Եւ այսպէս երկար ժամանակ ի ծերութիւն հասե[ա]լ և [ան]պայման բարի քաղաքավարութեամբ կեցեալ ըստ կամացն աստուծոյ ի զար[դ] եկեղեցւո[յ] և ի պարծանս ուղղափառ հաւատացելոց, փոխեցաւ ի հանգիստն արդարոց, յիշատակ նորա օրհնութեամբ եղիցի առաջի աստուծոյ։

Վասնորոյ հոգ տարեալ աս յայժ եկեղեցւոյ նորին մանկանց վերածնելոց ի Քրիստոս և բաղում ինչ բան թիւրեալ ի սուրբ գիրս՝ յուղղեաց ի մեկնչաց սրբոց, նաև զՍաղմոսն գլխովին՝ զերկարութիւն յաչ և յայլ մեկնչաց ի մի վայր ժողովել կարճ և համառօտ բանիւ, սեփականել զիւրահաս ընթերցողաց։ Որպէս և զայս մեծ հոգևոր բուրաստանս ամենալիր ծաղկոցացս՝ Պատճառս տօնից տէրունականաց և հաւարմանց սուրբ բանասիրաց... որով և ես ի[սկ] յամենայնի անարժանս և անպիտանս, որ Տիրացու անուանեցա ի նորին աշակերտացն, որ և ի սա աշխատեցայ և ըստ կարի իմում ջանիցս զտէրունական Տօնից պատճառն, որ ի սա գծագրեցար... հոչակաւոր սուրբ ուխտիս ի յաստուած[ակառո՞]ց ...Հաղբատ, թուին Հայոց ՉԺԶ [1267]... տէրունական սուրբ և աստուածընկալ նշանիս... և այլ սրբոցս, յաթոռակալութեանս տէր Յովհաննիսի մեծի հռետորի և սուրբ վերադիտողի...»[48]։

Նույն հիշատակարանի մասին հարկ ենք համարում քիչ ավելի մանրամասն խոսել այն պատճառով, որ դրա հետ կապվում են հատկապես Վարդան Արևելցու վերաբերյալ կենսագրական ու մատենագիտական մի քանի շատ կարևոր խնդիրներ և որ դրա շուրջ բանասիրության մեջ արդեն գոյացած է որոշ շփոթ։

Արդ, ո՞վ է այս հայտնի Վարդան վարդապետը։ Մեր կարծիքով, այստեղ հիշատակված Վարդանը կարող էր միայն Արևելցին լինել։ Նույն հիշատակա-

---

46 Մատենադարան, ձեռ. № 2043, էջ 90ա։ Նույնը՝ Երուսաղեմ, Ս. Հակոբյանց Մատենադարան, ձեռ. № 372, էջ 11բ, տե՛ս Ն. Պողարյան, Մայր ցուցակ ձեռագրաց սրբոց Հակոբյանց, Բ, Երուսաղեմ, 1967, էջ 394։

47 Մատենադարան, ձեռ. № 2041, էջ 327բ։

48 Մատենադարան, ձեռ. № 4139, էջ 438ա—438բ։ Հմմտ. Լ. Խաչիկյան, Յաղագս Տարեմտին ի Վանական վարդապետէ ասացեալ, Առաջաբան, «Գիտական նյութերի ժողովածու», I. Երևան, 1941, էջ 155—156։

բանի վկայությամբ, նշված Վարդանը «արեգակնածաց փայլմամբ» լուսավորում էր «ի մերումս բացափայլեալ ժամանակի», այսինքն XIII դ. 60-ական թվականներին: Այդ տարիներին Վարդան Հաղբատեցու գոյության մասին խոսք լինել չի կարող: Հայտնի չէ նաև, որ Այգեկցի և Բարձրբերդցի Վարդանները երբևէ եղել են Հաղբատում: Հետևաբար, հավանական չէ, որ խոսքը նրանց վերաբերի: Ձեռագրի գրիչ ու հիշատակարանի հեղինակ Տիրացուն վկայում է, որ ինքը ընդամենը մեկ տարի առաջ, 1266 թ. դեռ աշակերտ էր այդ նույն Վարդանի մոտ, Խոր Վիրապում: Այսպիսով, նա չէր կարող հաղբատեցի Վարդանի աշակերտը լինել, որը մահացել է դեռևս 1191—1194 թվականներին, ինչպես ցույց է տվել Ն. Ակինյանը[49]: Վերջապես, դարձյալ այդ հիշատակարանի վկայությամբ, խոսքը վերաբերում է այն Վարդանին, որը հանդիսանում է «Մեկնութիւն Սաղմոսաց Դաւթի» երկի հեղինակը և Տոնապատճառ ժողովածուի կազմողը:

Ինչպես կտեսնենք ստորև, հիշյալ մեկնությունը, անտարակույս, պատկանում է Արևելցու գրչին, իսկ Տոնապատճառը վերակազմող հեղինակի խնդիրը թեև ուսումնասիրության չի առնված առ այսօր, սակայն իրավամբ կապվում է այս Վարդանի հետ[50]:

«Մեկնութիւն Սաղմոսաց Դաւթի» աշխատության Վարդան Արևելցու գրչին պատկանելու վերաբերյալ մեր կարծիքին ի հաստատություն կարող ենք բերել հետևյալ լրացուցիչ փաստերը: Վարդան Արևելցու «Ի ՃԱ սաղմոսն» ճառի և վերոհիշյալ «Մեկնութիւն Սաղմոսաց Դաւթի»-ի մեջ համապատասխան սաղմոսի (ՃԱ) վերաբերյալ արված մեկնաբանական տողերի միջև կան որոշակի ընդհանրություններ և համանման ձևակերպված նույնական մտքեր: Այսպես,

---

49 Ն. Ակինյան, Մատենագրական հետազոտություններ, Ա, Վիեննա, 1922, էջ 72—73:

50 Կարապետ Տեր-Մկրտչյանը այս առթիվ գրում է. «Այստեղ հիշված Վարդանն էլ պատմիչը չէ, իհարկե, որովհետև 1267 թվականին արդեն վախճանված էր, իսկ պատմիչը վախճանվել է 1271 թ....»: Նա միաժամանակ գտնում է, որ այս հիշատակարանում երկու Վարդաններ (Սանահնի առաջնորդ և Արևելցի) շփոթված են, քանի որ, ըստ նրա բացատրության, հիշատակարանում «Մեկնութիւն Սաղմոսաց Դաւթի»-ն իբր թե վերագրված է Սանահնի առաջնորդ Վարդանին: Այս ենթադրությունը ինքնին հետաքրքիր է, բայց մեր կարծիքով, առնվազն երկբայելի: Հիշատակարանում նշված Վարդանը, ինչպես ինքն էլ է ասում, Վարդան Այգեկցին լինել չէր կարող, չէր կարող լինել նաև Վարդան Հաղբատեցին, որովհետև նրա ամենաուշը 1195 թվականին մահացած լինելը ստույգ է (Ն. Ակինյան, նշվ. աշխ. Ա., էջ 72—73): Ուստի, մնում է ենթադրել, որ նա կամ իրապես Վարդան Արևելցին է, կամ էլ մի ուրիշ Վարդան, որը, սակայն, նույնպես պետք է մեծ վաստակի, մանկավարժական գործունեության և համբավի տեր եղած լինի, ինչպես հայտնված է նշված հիշատակարանում: Այսպիսի մի Վարդանի մասին դեռևս ոչ մի տեղ որոշակի խոսք չի եղել: Կ. Տեր-Մկրտչյանը վկայակոչում է երկու փաստ իբրև հաստատություն այն բանի, որ Լոռու ժողովին մասնակցող Վարդանը Հաղբատեցին չէր կարող լինել, ինչպես վկայում է Ն. Ակինյանը (անդ, էջ 72), այլ այն Վարդանը, որը դեռ 1211 թվականին եղել է առաջնորդ Սանահնի: Բայց Կ. Տեր-Մկրտչյանի այս դիտողությունից բնավ չի բխում, որ այդ Վարդանը՝ հենց այն Վարդանն է, որի մասին խոսվում է վերոգրյալ հիշատակարանում: Չէ որ առաջնորդ լինելը դեռ ապացույց չէ այն բանի, որ նա հայտնի մատենագիր է եղել և ունեցել է աշակերտներ: Իսկ առ այսօր ոչ մի վկայություն մեզ չի հասել, որ առաջնորդ Վարդանը եղել է նաև այդպիսին: Մինչդեռ հիշատակարանում պարզ ասված է, որ այնտեղ նշված Վարդանը արդյունաշատ և անվանի մատենագիր է (Գիրք հաւատոյ... էջմիածին, 1914, Ներածություն, էջ CXII—CXV: Այս մասին մանրամասն տե՛ս մեր «Վ. Արևելցու գրական-գեղարվեստական երկերը» դիսերտացիոն աշխատությունը, էջ 329—332, անտիպ):

| Սաղմոսաց մեկնութիւն... | Ճառ ի ՃԱ Սաղմոսն |
| --- | --- |
| Մօտ եղէ ի գիշերի՝ կատարած կենաց, զի շուք զիւրաշարժ է և յերեկոյին բնաւ պակասի, որպէս խոտ ցամաքեալ, որ զձեռս հնձողին կոչէ ի հնձել, և մարգ ծերացեալ՝ զմահ...»[51]։ | ...Որպէս ի մտանել արևուն ընդ ամպով բոլոր աշխարհս ստուեր լինի եւ առաւել ի մուտ Արեգականն... ցամաքեալ խոտ զձեռս հնձողացն յառաջ կոչէ, որպէս հասակ մարմնոյն ծերացեալ՝ զմահ...[52]։ |

«Մեկնութիւն Սաղմոսաց Դաւթի»-ի մեջ կա քաղվածք Հովհաննես Վանականի երկից. «Վանական վարդապետի ասացեալ, խնդրել պարտ է, թե յի՞նչ միտս ասեմ ի յիշատակի մեռելոց, ասեն, թէ ի վերայ գերեզմանին Ադամայ ասաց Դաւիթ զայս Սաղմոս...»[53]։ Ձեռագրական մանրակրկիտ համեմատություններից պարզվում է, որ Հովհաննես Վանականի երկերից ամենից առաջ օգտվել են նրա անմիջական աշակերտները և, հատկապես, Վարդան Արևելցին։ Նրա գրեթե յուրաքանչյուր փոքր ու մեծ աշխատության մեջ Հովհաննես Վանականը հիշատակված է իբրև օգտագործված աղբյուրի կամ մտքի հեղինակ։ «Մեկնութիւն Սաղմոսաց Դաւթի»-ի դեպքում էլ նույն որոշակի փաստն է նկատվում։

Հայտնի է նաև, որ Վարդան Արևելցին Հովհաննես Ոսկեբերանին սիրում է կոչել «Ոսկիբերան»[54]։ Հիշյալ Մեկնության մեջ ևս ասված է. «Ոսկեբերանն Յովհան»[55]։ Այս էլ, մեր կարծիքով, օժանդակ մի փաստ է, որը նույնպես մեզ տանում է դեպի Վարդան Արևելցին։

Սաղմոսաց մեկնության առաջաբանում կարդում ենք հետևյալը. «Որպէս և մեզ եղեւ հրաման կանուխ և անագան ի ձեռն խնդրոյ զկանուխն անուանակիր միոյ տեառն՝ զլուխն արհեստական տէր Յովհաննէս, նստեալն յաթոռ Սուրբ ուխտին Հաղբատայ յԵրեւանի աշխարհի՝ հարկեցուցիչ և վճիռ հրաման տալ»[56].

---

51 Վարդան վարդապետի Մեկնութիւն Սաղմոսաց Դաւթի..., Աժդարխան, 1797, էջ 331։

52 Մատենադարան, ձեռ. № 4139, էջ 403ա—403բ։

53 «Վարդանայ վարդապետի Մեկնութիւն Սաղմոսաց Դաւթի», էջ 419։

54 Մատենադարան, ձեռ. № 750, էջ 1ա։

55 «Վարդանայ վարդապետի Մեկնութիւն Սաղմոսաց Դաւթի», էջ 421։

56 Անդ, էջ 3։ Ինչպես հայտնի է, Հաղբատում XIII դ. պաշտոնավարել են Հովհաննես անունով մի քանի առաջնորդներ, որոնց անձնավորությունն ու ժամանակագրությունը առ այսօր լրիվ չի վերականգնված նույնիսկ նրանց վերաբերող ամենավերջին և ամենաամբողջական աշխատություններում (տե՛ս Կ. Ղաֆադարյանի, Հ. Ոսկյանի նշված աշխատությունները)։ Ըստ Մ. Չամչյանի, հիշյալ պատվիրատուն Բագրատունի Հովհաննեսն է (Մ. Չամչյան, Պատմութիւն հայոց, Գ., Վենետիկ, 1786, էջ 240—241)։ Նույն կարծիքին է նաև Հովհաննես Կրիմեցին, (տե՛ս նրա Պատմութիւն հռչակաւոր Վանից Հաղբատայ սուրբ նշանին, Վիեննա, 1965, էջ 88, 107)։ Անհավանական չէ սա, եթե անգամ ոչ թե 1251, այլ, համաձայն Հ. Աճառյանի, 1242 թվականին մահացած լինի նա (տե՛ս Հ. Աճառյան, Հայոց անձնանունների բառարան, Գ, էջ 587)։ Սակայն կա նաև մի այլ ուշագրավ հանգամանք։ Հաղբատի վիմագիր արձանագրությունները (տե՛ս Կ. Ղաֆադարյան, Հաղբատ, էջ 281, Հ. Ոսկյան, նշվ. աշխ. էջ 223—224), ինչպես նաև գրավոր աղբյուրները (տե՛ս Հովհաննես Կրիմեցի, նշվ. աշխ. էջ 106—107) վկայում են, որ մինչ Հովհաննես Դոփյանի Հաղբատի առաջնորդ լինելը Համազասպն ու Հովհաննեսը պարբերաբար հաջորդում են միմյանց 1240—1257 թվականների ընթացքում։ Այդ Հովհաննեսը, ամենայն հավանականությամբ, վերոհիշյալ Բագրատունին է՝ վերջինիս առաջնորդ ընտրված։ Հայտնի է, որ սույն Համազասպ առաջնորդը Վարդան Արևելցուն պատվիրել է գրել մի քանի ներբող՝ նվիրված Գրիգոր Լուսավորչին, նրա «Թոռներին», Հովհան Օձնեցուն

Այս դեպքում հրաման տվողը Հաղբատի այն Հովհաննես վանահայրն է, որը պաշտոնավարել է 1240 թվականից ոչ շուտ, ուստի, ժամանակակիցն է Վարդան Արևելցու[57]:

«Գրոց ցանկերում» Սաղմոսի մեկնությունը վերագրված է Վ. Արևելցուն[58]: Կարծում ենք, պետք չէ անտեսել մատենագրական ավանդությունը, որը դարերի ընթացքում որպես հիշյալ երկի հորինող մատնանշել է Վ. Արևելցու անունը:

Կ. Տեր-Մկրտչյանը հակասություն է տեսնում № 4139 ձեռագրի հիշատակարանում նշված Վարդանի ու Վարդան Արևելցու մահվան տարեթվերի՝ 1267-ի և 1271-ի միջև[59]: Իսկապես էլ այստեղ հակասություն կա: Դժվար է բացատրել, թե ինչու վերոգրյալ հիշատակարանում ամեն ինչ ճիշտ պիտի նշվեր Վարդան Արևելցու մասին և, հանկարծ, սխալ հաղորդված լիներ նրա մահվան թվականը: Արդյո՞ք դա գրչական վրիպակ չէ: Ձեռքի տակ ունենք նույն գրչի ևս մի հիշատակարանը՝ 1270 թվականին ընդօրինակված № 1119 ձեռագրի մեջ, ուր դարձյալ խոսք է լինում Սաղմոսի մեկնության հեղինակ Վարդանի մասին[60], սակայն ոչ մի ակնարկ չկա նրա արդեն մահացած լինելու վերաբերյալ: Վերջապես, մեզ հայտնի է այս նույն Տիրացու գրչի մի երրորդ հիշատակարանը, որտեղ, ի միջիայլոց, ասված է հետևյալը. «Յիշատակ նորա [Վարդանայ վարդապետի] օրհնութեամբ եղիցի, ամէն: Վասն որոյ, ես՝ Տիրացու, անարժան աշակերտ գոլով նորուն, անտառ տեղեան գրեցի զսա… կատարեցաւ սա ի Վիրայն, մինչ կայաք մեք ի յուսման ի թվին ՉԺԵ (1266), յիշեցէք ի տէր…»[61]: Այստեղից պարզ է դառնում, որ Տիրացուն, անտարակույս, Վարդան Արևելցու անմիջական աշակերտն է եղել, քանի որ ուսանել է Խոր Վիրապում 1266 թվականին, որտեղ այդ ժամանակ ուսուցանող Վարդանը, ինչպես հայտնի է, եղել է Արևելցին: Հետևաբար, նրա վերոհիշյալ հիշատակարանի խոսքերն էլ կարող էին վերաբերել միայն այս Վարդանին:

Այս հիշատակարանը հրատարակել է Լ. Խաչիկյանը և նույնպես գտել, որ այնտեղ նշված Վարդանը Արևելցին է: Ահա թե ինչ է գրում նա այս կապակցությամբ. «...ունի ընդարձակ և շատ հետաքրքիր հիշատակարան Վարդան Արևելցու կյանքի և «Տօնապատճառ» կոչվող ժողովածուների ծագման պատմությունն ուսումնասիրելու համար»[62]:

---

Ըստ երևույթին, Համազասպի օրինակով Հովհաննեսն էլ հարկ ու պատշաճ է համարել այդ նույն Վարդանին պատվիրել գրելու «Մեկնութիւն Սաղմոսաց Դաւթի»-ն: Թեև ստույգ չգիտենք, թե ինչ հիմք են ունեցել հիշյալ երկի հրատարակիչները, երբ որպես հեղինակման թիվ նշել են 1251-ը, սակայն կարելի է այն ընդունելի համարել, նկատի ունենալով Հովհաննես Վանականի անվան և որպես աղբյուրի նրա անանուն աշխատության հիշատակության անշփոթ ժամանակագրական վերոհիշյալ հանգամանքները: Ըստ այդմ էլ հիշյալ Մեկնությունը պետք է գրված լինի ոչ շուտ, քան 1240 թ. և ոչ ուշ, քան 1257 թ.: Այս թվականները նույնպես առավելագույնս պատշաճում են Արևելցի Վարդանի կյանքի և գործունեության մանրամասնություններին:

57 Կ. Ղաֆադարյան, Սանահինի վանքը և նրա արձանագրությունները, էջ 195: Հ. Ոսկյան, նշվ. աշխ. էջ 110:

58 Հ. Անասյան, նշվ. աշխ., էջ LX—LXIII:

59 «Գիրք հաւատոյ», Ներածություն, էջ CXIII:

60 Մատենադարան, ձեռ. № 1119, էջ 5բ:

61 Ս. Տեր-Ավետիսյան, Ցուցակ հայերէն ձեռագրաց Նոր Ջուղայի (Մատենադարան. Անտիպ ձեռագրացուցակների ֆոնդ), № 354:

62 Լ. Խաչիկյան, «Յաղագս Տարեմտին ի Վանական վարդապետէ ասացեալ», Առաջաբան, էջ 155:

*Նկատելի և կարևոր փաստ է, որ Հովհաննես Վանականը իր աշակերտներին անմիջական ցուցում է տված եղել հատուկ զբաղվել Հայսմավուրքների, Տոնապատճառների, թերևս նաև մյուս ժողովածուների վերակազմության ու խմբագրման աշխատանքներով։ Դրանցից տեր-Իսրայելի և Կ. Գանձակեցու[63] կատարած աշխատանքներն այդ բնագավառում՝ արդեն հայտնի են (նրանց են վերագրվում Հայսմավուրքի երկու իրարից անկախ խմբագրությունները)[64]. Հավանական է, որ Տոնապատճառի վերախմբագրումն ու վերակազմությունը հանձնարարված է եղել Վարդան Արևելցուն։*

*Այս բոլորից, կարծում ենք, խնդրո առարկա ժողովածուների վերաբերյալ եղած շփոթության մեջ կարելի է ավելի հստակություն մտցնել, ավելի պարզ պատկերացում ունենալ դրանց և, հատկապես, Տոնապատճառի մասին և ստուգապես հետևցնել, որ № 4139 ձեռագրի հիշատակարանի Վարդանը՝ ինքը Վարդան Արևելցին է։ Ուստի, կասկածից դուրս է նաև, թե նա է, որ վերախմբագրել ու վերակազմել է Տոնապատճառ ժողովածուն, փոխել է նրա նախնական կառուցվածքը (հմմտ. № 4139 ձեռագիրը №№ 2021, 2039 ձեռագրերի հետ), նոր նյութեր ավելացրել և իր հեղինակած ճառերը զետեղել նրա մեջ (տես 4139 ձեռագրի թթ 235 ա, 327բ, 367ա, 386ա, 387ա)։*

П. П. АНТАПЯН

## СБОРНИК «ТОНАПАТЧАР»


В армянском рукописном наследии сохранился ряд специфических церковно-обрядовых сборников, которые являются интересными памятниками армянской средневековой литературы.

Статья посвящена исследованию одного из этих сборников—«Тонапатчара» (сборник теоретических объяснений о церковных праздниках).

В статье освещены некоторые особенности «Тонапатчара», его связи с аналогичными памятниками, затронут вопрос о времени составления и предполагаемых авторах данного сборника.

«Тонапатчар» сохранился в трех основных редакциях. В статье они представлены соответствующими списками материалов (заголовок и первая строка), взятых из рукописей №№ 2201, 2039 и 4139.

Подробный филологический анализ приводит автора к выводу, что последний редактор сборника, Вардан, не кто иной как известный писатель и историк XIII века Вардан Аревелци.


---

*63 Ի դեպ, հակառակ որոշ հեղինակավոր աշխատություններում տրված եզրակացությունների, Հայսմավուրքի Կիրակոս Գանձակեցու կողմից խմբագրված լինելը, մեր կարծիքով, դեռևս վերջնականապես պարզված չէ։ Այլ առիթով անդրադառնալու ենք այս խնդրին։*

*64 «Յայսմաւուրք», Կ. Պոլիս, 1834, Յառաջաբան, էջ 1—2։ Մ. Ավգերյան, նշվ. աշխ., Ներածություն, էջ ՀԳ—ՀԶ։ Կիրակոս Գանձակեցի, Պատմություն հայոց, աշխատասիրությամբ Կ. Ա. Մելիք-Օհանջանյանի, Երևան, 1961, Առաջաբան, էջ ԻԵ—ԻԶ, ԻԹ։*

P. P. ANTABIAN

# „TONAPATCHAR"

L'héritage manuscrit arménien comprend quelques recueils rituels spécifiques, qui sont d'intéressants monuments de la littérature arménienne médiévale.

L'article est consacré à l'un de ces recueils, au „Tonapatchar„ (recueil d'explications théoriques au sujet des fêtes religieuses).

L'auteur examine certaines particularités du "Tonapatchar„, son rapport aux recueils analogues, ainsi que les questions relatives à l'époque de la rédaction et aux auteurs supposés du recueil.

Le „Tonapatchar" a eu trois principales rédactions. Dans l'article elles sont représentées par des listes de matériaux (en-tête et première ligne) puisées aux manuscrits №№ 2201,2039 et 4139.

Une analyse philologique détaillée amène l'auteur à conclure que le dernier rédacteur du recueil, Vardan, n'est autre que Vardan Areveltsi, célèbre écrivain et historiographe du XIII siècle.